ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 8 1967

ՓԱՅԼԱԿ ԱՆԹԱԲՅԱՆ

# ՎԱՐԴԱՆ ԱՐԵՎԵԼՑՈՒ «ԺՂԼԱՆՔԸ»

«Ժղլանքը» Վարդան Արևելցու ամենաուշագրավ ստեղծագործություններից է։ Ձեռագրերում այն հետևյալ խորագիրն ունի. «Լուծմունք ի ս. Գրոց Վարդանայ վարդապետի ի խնդրոյ բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ»[1]։ Սակայն, հետագայում, մեր մատենագրության և բանասիրության մեջ, այն հիշատակվում է «Ժղլանք» անունով։ Այս բառը, որ միջնադարյան հայերենում նշանակել է զրույց. զրուանք, մանր գիտելիք[2], առնված է հեղինակի հիշյալ աշխատության մեջ զետեղված հիշատակարանից։ Այստեղ նա հայտնում է, որ ինքը մի քանի մեկնողական բնույթի նյութերից հետո գրել է ժղլանքներ։ Մենք էլ պահում ենք «Ժղլանք» անունը, նկատի ունենալով, որ այն ավելի է պատշաճում այս աշխատությանը և ավելի ճիշտ է բնորոշում նրա էությունը*։

Կիլիկիայի հայկական թագավորության պալատական շրջանակների ավանդական մի սովորության համաձայն, ամեն օր մի հոգևորական ներկայացել է պալատ և «ռամկորեն» զրուցել թագավորների և իշխանների հետ դաստիարակի, գուցե և, խոստովանահոր ու պետական խորհրդատուի հանգամանքով։ XIII դարում Կիլիկիայում եղած դոմինիկյան միաբանության անդամ Բուրկարդուս դե Սանտե Մոնտեն իր Ուղեգրության մեջ այս մասին արձանագրել է հետևյալ մանրամասնությունը, որը մեջ ենք բերում ստորև. «...Թագավորական տան անդամները, իշխանները և բոլոր ազնվականները սիրով են լսում աստծո խոսքը։ Դրա համար է, որ յուրաքանչյուր օր ժամը 3-ին մի վարդապետ կամ վանական գալիս է թագավորի ու իշխաններից յուրաքանչյուրի ամրոցը. դրանց մոտենում է միշտ իշխանը ինքը, մենակ կամ թե զավակների ու տնեցիների հետ միասին։ Վանականները դնում են առաջները որևէ մի գիրք և կարդում նրանց ներկայությամբ ռամկորեն (in vulgari), որովհետև ուրիշ լեզու չգիտեն, կամ թե բացատրում նրանց դոցա բնագիրը, և, եթե աշխարհականները որևէ տեղ կասկած ունեն, առաջադրում են հարցեր և ստանում վանականներից դրանց մեկնաբանությունը սրբոց ցուցմունքների համաձայն»[3]։

Չափազանց հետաքրքիր այս երևույթի արգասիք է մեր կողմից քննարկվող աշխատությունը, որն իր տեսակով եզակի է մեր մատենագրության մեջ։

1 Մաշտոցյան մատենադարան, ձեռ. № 750, էջ 1ա, 8132, էջ 1ա և այլն։

2 Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, Երևան, 1930, հ. Դ, էջ 42։

* «Ժղլանքն» ամբողջությամբ կամ հատվածաբար առկա է Մաշտոցյան մատենադարանի բազմաթիվ ձեռագրերում։ Սույն հոդվածի մեջ այս կամ այն առիթով խոսք կլինի նրանցից միայն մի քանիսի մասին, որոնք կամ ժամանակագրականորեն ավելի հին են, կամ էլ «Ժղլանքն» ընդգրկում են համեմատաբար ավելի ամբողջական։

3 «Արարատ», 1914, նոյեմբեր, էջ 1016։
Այդ ուղեգրության Կիլիկյան Հայաստանին վերաբերող մասը թարգմանել է Աշոտ Հովհաննիսյանը։

Ելնելով նրա հարուստ և բազմազան բովանդակությունից, արծարծված հարցերի բնույթից ու արժեքից, կարելի է հեշտությամբ եզրակացնել, թե այդ գրույցները որքան բովանդակալից, հետաքրքիր, կարևոր և օգտակար են եղել: Վերը բերված վկայության մեջ թեև ասված է, որ գրույցների ժամանակ լսում էին միայն «աստծո խոսքը» և ս. գրքերի մեկնությամբ զբաղվում, սակայն «Ժղլանքի» օրինակով կարող ենք հետևցնել, որ այդ գրույցների թեմաները բազմաթիվ բնագավառներ էին շոշափում:

Ե՞րբ և որտեղ է Վարդան Արևելցին գրել «Ժղլանքը»: Այս հարցին ամենայն որոշակիությամբ պատասխանել չենք կարող, որովհետև բացահայտ տվյալներ չունենք: Նրան ուղղակիորեն առնչվում է միայն «Ժղլանքին» առընթեր հեղինակի հիշատակարանը, որը մեջ ենք բերում ամբողջությամբ[4]:

«Այսպէս արա և դու. սակաւ մի աշխատեա, քո սակաւ աշխատիլն զայլոց շատն արժէ, զի որպէս լուար ի Քրիստոսէ ամէն մարդոյ հրեշտակ կա պահպան, և ձեզ, որ ազգի գլուխ և թագաւոր էք, ինքն՝ գլուխն Քրիստոս է պահպան և անմեկնելի: Մի՛ պաշտէք զնա որպէս հեռաւոր, այլ որպէս առ քեզ, ի սըրտիդ և յոգւոջդ, ուր կամիս զգլուխս և զերեսս դնել ի պատուհնմա ի գիրկն դնես և յաստուած միանաս, և զօգի իմ տառապեալ և տկար յիշեսցես, որ զքեզ սիրէ առաւել քան զասել: Վասն որոյ զայս աշխատութիւն տկար մարմնով կատարեցի սիրով ձեր զուարճացեալ և աժանդակեալ. և յիշեա՛, զոր ի ձեռն Թորոսի հրամայեցիք վասն եղաբերից կանոնցն գրել ձեզ և ի խորհուրդ պատարագին, և ապա երեսաւք յԱնդաւլն հրամայեցիք, որ գրեսցուք ձեզ ժղլանք ի մեկնութենէն քերականին: Եւ ես այլ յաւելի սիրով գրել ձեզ ձեռամբ յուծմունս յԱւետարանէն և յԱրարածոցն: Ուստի տեսէք թէ շատ էիք հարցանել և սիրէք սրտիւ, է որ հանգուցանէ զձեր միտքդ և է իմանաս (՞), որ պատճառ լինի ձեզ բանաւորութեան[5] զայս հարցանելոյ և զատոյգն գտանել: Բայց աղաչեմ զպարզամիտ մարդ և զառաքինի մի՛ հարցանել, որ չամաչեն, զի ես նախահոգութեամբ գրեցի և թէ առ ժամն զիս հարցանեն և ես գտանիմ տկարացեալ, վասնորոյ մի՛ մեղադրեր ժամուն չգտանուղաց պտեսութիւն բանին: Եւ ես գիտեմ այս չէ թագաւորական իրք, այլ ոսկեգիր պիտէր և ճարտար գրչի: Եւ ես շատ պատճառ ունէի, որ խափանէր զիս յայս ձեռնարկութենէս. տկարութիւն և մաւթն ի խրճիթս և հողմ Պարխարու փոշէխառն փչելով ընդ պատուհանս և պաղ աւդոյս, բայց սիրովն հրաշագործիւ յաղթահարեալ եղեն պատճառքն, և, որպէս տեսանէք, եղև: Թէ կամիս դիւրին է տալ փոխել ի լաւն, որ հեշտ կարդայք և թող Գրիգորէսն[*] փոխէ, որ բան չկորնչի: Բայց իմ կամ է, որ իմ մատանցս աստայրն մնա առ ձեզ. ո գիտէ թէ աւելի շնախաւոր լինի ձեզ վասն սիրոյն իմոյ որ առ տէր և սիրոյն որ առ ձեզ, զի յայնց ճառ պատմութիւն չէ, որ շատ աշխատանք տանին և ապա բան գտանեն: Թէ թուղթ մի կարդաս ժամուն կամ՝ Բ, զբաղանես յոլով խորհուրդս և ահաւասիկ աղահասակ և մտաւք և աչաւք զուարթ էք, և մի անգամ կարդալն և սակաւ ինչ աշխատիք և յայլն անհոգ լինիք, և զի ար-

---

[4] Մաշտոցյան մատենադարանի № 750 ձեռագրում սույն հիշատակարանը թերի է, այդ պատճառով քաղել ենք № 341 ձեռագրից, էջ 103ա: Առաջինում սկիզբն այսպես է. «...Եվ յայնց արա, իմ պարոն...», էջ 125բ:

[5] № 2544 ձեռագրում՝ չիք:

[*] Հավանաբար Կոստ. կաթողիկոսի մյուս եղբոր որդին է, Թորոսի հորեղբայր տղան, որը Հեթում Ա-ի մոտ պալատական պաշտոնյա էր: Տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, Երևան, 1942, հ. Ա, էջ 577:

քաուհի և արքա[6] ի միում մարմնի տեսանի և հասարակ է հոգևորն և մարմնաւորն։ Եւ թէ ահաւասիկ իրք մի ադուտ լինի ի գրելոցդ կամ մխիթարութիւն երկուցդ լիցի և դակնտ բազմագոյն և պայծառ, որ պսակէ զձեզ յաւիտեան։ Թո՛ղ թագուհին պահն և ի պիտոյ ժամն առնոյք ի նմանէ. և նմա՛ հրամա[յ]է Պաւղոս հարցանել զձեզ և զպատշաճն ծանուցանել, և պարտական են, ասէ, ապրեցուցանելոյ զերեարս առն և կնոջ։ Եւ զերկոսինսդ ապրեցուսցէ տէր Յիսուս կենդանութիւն ձեր ի խնամս հաւր և ի գութ հոգւոյն սրբոյ՝ յաջողումն անդեան ղալարաձակ, անկարօղրոջ, շառաւեղեալ տօտոյդ, ծիրանածին տղայոցդ ի գիրկս Սիոն[ի] սրբոյ, ի կատարումն պակման հայակոյտ աղնուական ազգաց և ազանց, տոհմից ազատաց, ազատեցուցիչք արեանաոու զարմից, լծաղիրք և բեռնարարձաւղք, կորացուցիչք աւտարաց ազգաց, ի փառս փառաւոր և պաշտեցեալ աստուածութեան, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն»[7]։

Ինչպես նկատում ենք այստեղ բավական մանրամասնություններ կան «Ժղլանքի» գրության վերաբերյալ, սակայն թվականն ու վայրը չեն հիշատակված։ Նշված է միայն մի տեղանուն՝ Անգուլ, որը Ղ. Ալիշանի ենթադրությամբ «Կիլիկիո վանքերեն մեկն է ոչ շատ ծանոթ»[8]։

Որ Կիլիկիայում է Վարդան Արևելցին գրել «Ժղլանքը», անտարակույս է։ Սակայն ե՞րբ և ո՞ր որոշակի վայրում։ Բանասիրության մեջ ընդհանուր կարծիք չկա այս հարցում։ Կիրակոս Գանձակեցին վկայում է, որ նա Կիլիկիայում 5 տարի մնալուց հետո Հայաստան է եկել 1246 թ. իր հետ բերելով Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսի հայանի շրջաբերական թուղթը[9]։

Գրավոր որոշ տվյալներ հիմք են տալիս ասելու, որ նա Հայաստանից վերստին Կիլիկիա է գնացել և այնտեղ ապրել գոնե մինչև 1251 թ.[10]։ Սակայն «Ժղլանքը» պետք է գրված լինի ոչ ուշ քան 1246 թ., քանի որ նրա ամենավերջին նյութերից մեկը՝ Հեթում Ա-ին ուղղված թուղթը, գրված է 1246 թ.[11]։

«Ժղլանքի» գրության վայրը նշելու համար շատ կարևոր է նախապես ճշտել, թե նրա հեղինակը Կիլիկիայում որտեղ կամ որ վանքում է ապրել։ Հայտնի է, որ Վարդանը Կիլիկիայում մնացել է կաթողիկոսի խնդրանքով, որպեսզի յավագույնս օգտվեին նրա բազմահարուստ գիտելիքներից։ Նա այնտեղ գործուն մասնակցություն է ունեցել տեղի հասարակական-եկեղեցական և մշակութային կյանքին, մշտական և սերտ համագործակցության մեջ է եղել կաթողիկոսի և թագավորի հետ։ Պարզ է, որ նա այս բոլորը անել չէր կարող, եթե մեկուսացած լիներ մի ինչ որ անհայտ վանքում։

Գիտենք նաև որ «Ժղլանքը» գրվել է Հեթում Ա-ի խնդրանքով, բայց Թորոս քահանայի անմիջական միջնորդությամբ, որը Հռոմկլայում 1253 և 1262 թթ.[12] գրել է տվել երկու ավետարան։ Նա ապրել ու գործել է կաթողիկոսանիստ

6 Ձեռ. № 341, էջ 104ա լուսանցքում է գրված «և արքաւ»-ն։

7 Ձեռ. № 341, էջ 103ա։ Հմմտ. Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 469։

8 Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 470, ծնթ. 1։

9 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, Երևան, 1961, էջ 298։

10 Լ. Խաչիկյան, Կոստանդին Բարձրբերդցու խրատական թուղթը, «Բանբեր մատենադարանի», 1958, № 4, էջ 269։

11 «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 503։ Այս թղթի գրության թիվը երբեմն շփոթվել է։ Նրանում գրված ՌՄԽԸ (1248) թվահամարի հիման վրա կարծել են, թե այն գրվել է 1248 թ.։ Սակայն նրա խորագրում պահպանված հայկական ՈՂԵ թիվը ցույց է տալիս, որ այն հենց այս թվին (1246) էլ գրվել է և թյուրիմացությունը գալիս է փրկչական թիվը տառացի բնդօրինելու համախազեկ շփոթությունից։

12 Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, Երևան, 1944, հ. Բ, էջ 351։

այս վանքում։ Այստեղ էլ մտերմական կապ է առեղծվում մի կողմից՝ նրա և Վարդանի, մյուս կողմից Թագավորի, կաթողիկոսի, Վարդանի և իր միջև։

Ինչ վերաբերում է վերը հիշատակված Անգղու վանքին, որը միաժամանակ եղել է Հեթում Ա. Թագավորի և Զաբել Թագուհու «հովանոցը» Սիս քաղաքից ոչ հեռու մի վայրում[13], հնարավոր է, որ Վարդան Արևելցին միաժամանակ հյուրընկալված լիներ նաև այնտեղ և վերոհիշյալ հիշատակարանի «երեսուք յԱնդուն հրամայեցիք» խոսքերի մեջ ակնարկ լինի այդ մասին։ Գուցե և Հեթում Ա-ն այստեղ է ներկայացրել «Ժղլանքը» գրել տալու իր խնդիրքը։

Վերոհիշյալներից բացի Կիլիկիայի ոչ մի այլ վանքի անուն չի առնչվում Վարդան Արևելցու գործունեության հետ։ Հետևաբար «Ժղլանքի» գրության վայրը կարող էր լինել Հռոմկլան, թերևս նաև՝ Անգղու վանքը։

«Ժղլանքը» հավաքական բնույթի երկասիրություն է։

Այն մեր առաջին փոքրիկ հանրագիտարանն է, իհարկե, այս բառի ոչ ներկա առումով։ Այնտեղ քննության են առնվել, մեկնվել, վերաիմաստավորվել գրեթե այն բոլոր հարցերը, որոնք զբաղեցրել են ժամանակակից մարդու միտքը և հուզել հոգեկան աշխարհը։ Խոսքը վերաբերում է բնության, երկնային մարմինների ծագման ու շարժման, բուսական ու կենդանական աշխարհի առաջացման, մարդկային բնության, իմացության, լեզվի, քերականական գիտելիքների, գրի, երաժշտության, կրոնա-բարոյագիտական, եկեղեցագիտական, դավանաբանական և այլ բազմաթիվ հարցերին։

Ժանրային առումով էլ այն բազմազան է. ունի լուծումներ, հակաճառություններ, հարց ու պատասխանիք, քերականագիտական և պատմական բնույթի նյութեր, գեղարվեստական արձակի նմուշներ և այլն։ Հակառակ Ոսկեփորիկների հետ ունեցած իր ձևական, կառուցվածքային նմանության, այն բոլորովին էլ Ոսկեփորիկ չէ, ինչպես կարծել են ոմանք[14]։ Իր բնույթով, թեմատիկայի ընդգրկմամբ, պարզ ոճի և «ռամկորեն» լեզվի շնորհիվ այն ուշադրություն է բևեռել իր վրա և լայն ճանաչում գտել։ Սկսած ԺԳ դարից մինչև ԺԹ դար «Ժղլանքը» արտագրվել է բազմաթիվ ձեռագրերում։ Այս ընդարձակ ժամանակաշրջանի գիտության ծարավի ընթերցողների համար այն հանդիսացել է իրենց հետաքրքրությունը գոհացնող հազվագյուտ գրքերից մեկը։

Շատ բնական է, որ այսպիսի մի երկասիրություն չէր կարող վրիպել բանասիրության տեսադաշտից, սակայն պետք է նշել, որ այն պատշաճ ուշադրության և գնահատանքի չի արժանացել ցայսօր։

«Ժղլանքի» մասին առավելապես խոսվել է հայերեն ձեռագրացուցակներում։ Նրա առանձին նյութերի քանակն ու ծավալը ճշտելու ուղղությամբ կատարված է որոշ աշխատանք, սակայն, ձեռագրերում նրա ունեցած ոչ միօրինակ վիճակը շատ շփոթությունների առիթ է տվել։

Ձեռագրացուցակների հեղինակներից բացի, ամբողջ «Ժղլանքի» կամ նրա այս կամ այն նյութի մասին խոսել են շատ հայագետներ։ Առաջին անգամ Մ. Չամչյանն է բանասիրորեն քննության առել «Ժղլանքի» մասը կազմող Հեթում Ա-ին ուղղված հայտնի Թուղթը, որը Պապի նվիրակ Դիմանցի՝ հայ եկեղեցու դեմ դրած մեղադրանքների սրամիտ պատասխանն է։ Մխիթարյան պատմաբանն այդ Թղթին անդրադառնում է չառնչելով այն «Ժղլանքի» հետ և գտնում, որ այն

13 Հ. Ոսկյան, Կիլիկիայի վանքերը, Վիեննա, 1957, էջ 96։

14 Ի. Հարությունյան, Հայոց գիրը, Թիֆլիս, 1892, էջ 267։

Վարդան Արևելցու գրչին պատկանել չի կարող, քանի որ շարադրված է «թանձրամիտ տգիտութեամբ», այլ Սալահեցի ոմն Վարդանի կամ Վարհամի գործն է[15]։ Մ. Չամչյանի այս տեսակետը պաշտպանել են Մխիթարյաններից շատերը[16]։ Ամբողջ «Ժղլանքի» մասին առաջին անգամ որոշակի խոսք ասել է Ղ. Ալիշանը Վարդան Արևելցու «Հաւաքումն պատմութեան» 1862 թ. հրատարակության առաջաբանում՝ ի միջի այլոց նշելով, որ այն գրված է «պարզ ու ռամկական ոճով» և ունի 66 նյութ[17]։ Ավելի ուշ նա դարձյալ անդրադարձել է նրան իր «Սիսուան» և «Հայապատում» ստվար աշխատությունների մեջ[18]։

Ֆրանսիացի անվանի հայագետ Վիկտոր Լանգլուան հայ գրերի գյուտով և նրա հետ առնչվող խնդիրներով զբաղվելիս ձեռքի տակ ունեցել է նաև «Ժղլանքը», որը հիմք ընդունելով՝ ենթադրել է, թե իբր հայ գրերը ասորական ծագում ունեն[19]։

Ի. Հարությունյանցը ևս իր «Հայոց գիրը» աշխատության մեջ «Ժղլանքի» վերաբերյալ գրել է, որ այն ընդարձակ տեղեկություններ է պարունակում հայ գրերի մասին և կոչվել է ոչ թե «Ոսկեփորիկ», այլ «Վարդանգիրք»[20]։

«Ժղլանքին» անդրադարձել է նաև Ն. Մառը 1892 թ.։ Նա բանասերների ուշադրությունն է հրավիրել նրա պարունակած մի վկայության վրա, ըստ որի, իբրև թե, Աբգար թագավորի և Թադեոս առաքյալի ջանքերով իրագործվել է ս. Գրքի ասորերեն մի թարգմանություն։ Նա առանձնապես ուշադրություն է դարձրել այդ վկայության մեջ եղած «էութին» բառի վրա, որը եղել է ս. Գրքից այդ հին թարգմանության մեջ, որն այժմ պակասում է ներկա մեզ հասած բնագրերից[21]։

Մ. Օրմանյանը նույնպես քննության է առել «Ժղլանքի» նյութերից Դիմանոչ նվիրակի դեմ գրված վերոգրյալ թուղթը և ընդգծել նրա ազգային-հասարակական նշանակությունը[22]։

Իր «Յովհ. Վանական և իւր դպրոցը» մենագրության մեջ «Ժղլանքի» առանձին նյութերի մասին համեմատաբար հանգամանորեն խոսել և բանասիրական կարևոր ճշտումներ է արել Հ. Ոսկյանը[23]։

Գ. Հովսեփյանը Մ. Այրիվանեցու հայտնի «Գրքերի ցուցակները» ուսումնասիրելիս կանգ է առել նաև «Ժղլանքի» «Իսկ քանի՞ գիրք են Աստուածաշունչ» հատվածի վրա և նշել վերջինիս ավելի վաղ գրված լինելը[24]։

Հիշյալ բոլոր հայագետներից ավելի «Ժղլանքով» զբաղվել է Լ. Խաչիկյանը։ Նա 1943 թ. «Տեղեկագրում» լույս ընծայած «Վարդան Արևելցու Վան

---

15 Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, Վենետիկ, 1786, հ. 3, էջ 231։

16 Վ. Արևելցի, Հաւաքումն պատմութեան, Վենետիկ, 1862, էջ Ժ։ Գ. Զարբհանալյան, Պատմութիւն հայ հին դպրութեան, Վենետիկ, 1932, էջ 751։ Գ. Սարգիսյան, «Բազմավէպ», 1949, էջ 120։ Տե՛ս նաև՝ Ս. Կոգյան, Հայոց եկեղեցին, Բեյրութ, 1961, էջ 456,

17 Վարդան Արևելցի, Հաւաքումն պատմութեան, էջ Գ.։

18 Ղ. Ալիշան, Սիսուան, Վենետիկ, 1885, էջ 224, Հայապատում, էջ 469, 470։

19 V. Langlois, Collection des historiens anciens et modernes de l'Armenie, Paris, 1869, հ. II, էջ 7։

20 Ի. Հարությունյանց, Հայոց գիրը, Թիֆլիս, 1892, էջ 267։

21 Ն. Մառ, Ամառային ուղևորութիւնից դէպ ի Հայս, Նկատողութիւններ և քաղուածքներ հայկական ձեռագրերից, Վիեննա, 1892, էջ 16։

22 Մ. Օրմանյան, Ազգապատում, Բեյրութ, 1960, էջ 1642։

23 Հ. Ոսկյան, Յովհ. Վանական և իւր դպրոցը, Վիեննա, 1922, էջ 77։

24 Գ. Հովսեփյան, Խաղբակեանք և Պռոշեանք, Երուսաղեմ, 1944, էջ 112։

բանին մասանց աշխատությունը» հոդվածի մեջ խոսելով Արևելցու Կիլիկիայում ունեցած գրական արդյունավետ գործունեության մասին, ի միջի այլոց գրել է, որ «Ժղլանքում» պարզ լեզվով շարադրված են «ժամանակի ամենաառաջավոր հայացքները տիեզերագիտության, երկրի կառուցվածքի, գրի և գրերի գյուտի, երաժշտության և այլ հետաքրքիր խնդիրների մասին»[25]։

Գ. Ջահուկյանը ևս շատ բարձր է գնահատել «Ժղլանքի» «Վասն բանին մասանց» քերականագիտական նյութը՝ ընդգծելով հայերենի շարահյուսության բնագավառում նրա բերած նորությունները և պարզ ու մատչելի լեզուն[26]։

Իր «Միջին հայերեն» աշխատության մեջ Ս. Ղազարյանը, բանիցս անդրադառնալով Արևելցու տարբեր աշխատություններին, նշել է նաև «Ժղլանքի» ու նրա վերոհիշյալ քերականական նյութի լեզվական առանձնահատկություններն ու գիտական արժանիքները[27]։

«Ժղլանքը» դեռևս հրատարակված չէ։ Տարբեր ժամանակներում նրանից միայն առանձին նյութեր և հատվածներ են լույս տեսել։

Առաջին արտատպությունը «Ժղլանքից» (հայ գրերի գյուտին վերաբերող հատվածը) 1867 թ. կատարել է ֆրանսիացի հայագետ Պրյուդոմը՝ ֆրանսերեն թարգմանությամբ[28]։

Նույնը համապատասխան մեկնաբանություններով լույս է ընծայել նաև Վ. Լանգլուան[29]։

Այնուհետև միևնույնը լույս է տեսել «Բազմավէպում»՝ «Պատառիկ մի ի գրոց մեծի վարժապետին Վարդանայ վասն գիւտի տառից մերոց ի ձեռն Ս. Մեսրոպայ» հրատարակիչների պայմանական վերնագրով[30]։

Այս նույն հատվածը առկա է նաև Ի. Հարությունյանցի «Հայոց գիրը» աշխատության մեջ[31]։

1869 թ. «Արարատ» ամսագրում «Ժղլանքից» լույս է տեսել մի այլ հատված, որը կազմված է հարց ու պատասխանի ձևով և վերջում ունի Հովհ. Գառնեցու կողմից հեղինակին պատմված մի պարսիկի քրիստոնյա մկրտվելու մասին հրաշապատումը[32]։

Մեր ձեռքի տակ եղած մի քանի հավաստի տվյալներ վկայում են, որ «Ժղլանքի» անմիջական մասն են կազմում որոշ նյութեր, որոնք մինչև այժմ դիտվել և հրատարակվել են իբրև նրանից անջատ առանձին միավորներ։ Այդ մասին հանգամանորեն կխոսենք ստորև։ Այժմ միայն թվենք այդ նյութերի հրատարակությունները։ Մեկը պապի նվիրակ Դիմանջի մեղադրանքների կապակ-

---

25 Լ. Խաչիկյան, Նշված հոդվածը «Տեղեկագիր», ՍՍՀՄ Ակադեմիայի հայկ. ֆիլիալ, 1943, № 2, էջ 82։

26 Գ. Ջահուկյան, Քերականական և ուղղագրական աշխատությունները հին և միջնադարյան Հայաստանում, Երևան, 1954, էջ 245, 253, 255։ Տե՛ս նաև Լ. Խաչերյան, Հայ շարահյուսագիտական մտքի վաղ շրջանի պատմությունից, «Բանբեր Մատենադարանի», 1962, № 6, էջ 114։

27 Ս. Ղազարյան, Միջին հայերեն, Առաջին գիրք, Երևան, 1960, էջ 86, 105, 121—124։

28 Prudhomme, Solutions des passages de lecriture sainte, par le vartabed Vartan. Trad. de l'armenien vulgaire sur le texte original. Paris, 1867, էջ 199։

29 V. Langlois, Collection des historiens anciens et modernes de l'Armenie, Paris, 1869, հ. II, էջ 7։

30 «Բազմավէպ», Վենետիկ, 1887, հտ. ԽԵ, էջ 197։

31 Ի. Հարությունյանց, Հայոց գիրը, էջ 267։

32 «Արարատ», 1869, էջ 52։

ցությամբ նրա շարադրած դավանաբանական նշանավոր թուղթն է, որն առաջին անգամ հրատարակվել է «Արարատում» և ապա՝ «Գիրք Թղթոցի» մեջ[33], մյուսը Վանական վարդապետի անունով նույն «Գիրք Թղթոցում» լույս տեսած հատվածն է[34]։ Երրորդը «Վասն բանին մասանց» քերականական նյութն է, որը հրատարակության է հանձնել Լ. Խաչիկյանը 1943 թ. համապատասխան առաջաբանով և համառոտ ուսումնասիրությամբ[35]։

«Աղվեսագրքին» վերաբերող կարևորագույն հարցերից մեկը նրա կառուցվածքի, ծավալի, ընդգրկած նյութերի և ամբողջականության հարցն է։ Մեր, մանավանդ ուշ շրջանի, ձեռագրերում նրա ընդհանուր պատկերը շատ է աղավաղված։ Զանազան գրիչներ, օգտվելով նրա կառուցվածքային առանձնահատկություններից, նրանից քաղել են միայն իրենց հետաքրքրող անհրաժեշտ նյութերը, որոնք հետագայում առանձին ընդօրինակվելով, դիտվել են իբրև ինքնուրույն միավորներ։ Այսպիսով դրանք երբեմն դուրս են եկել ոչ միայն «Աղվեսագրքի» կազմից, այլ նաև հեղինակի «իրավասությունից», մնացել են կամ իբրև անհայտ հեղինակի գործ, կամ էլ վերագրվել մեկ ուրիշի։

Ստորև մենք համառոտակի կանգ կառնենք այն մի քանի ձեռագրերի վրա, որոնք եղածներից հնագույններն են և «Աղվեսագիրքն» ընդգրկում են ամբողջությամբ։

Ա.— Փարիզի Ազգային գրադարան, հայկական ֆոնդ, № 12, 1274 թ., ստացող՝ Կեռան թագուհի[36]։

Բ.— Հալեպի Ս. Քառասուն մանկանց եկեղեցի, № 155, 1292 թ., Կիլիկիայի Փերճեր անապատ։ Գրիչ՝ Խաչատուր[37]։

Գ.— Վենետիկի Մխիթարյանց մատենադարան, № 264, 1366 թ., «Հավանորեն Աղթամարա Ս. Խաչ վանքն»։ Գրիչ՝ Ադամ[38]։

Դ.— Վենետիկի Մխիթարյանց մատենադարան, № 266, «Հավանորեն ԺԳ դարու վերջին կեսին և կամ ԺԴ դարու սկիզբներն»։ Գրիչ՝ Վասիլ սարկավագ, անանուն[39]։

Ե.— Մաշտոցյան մատենադարան, № 750, ԺԴ դ.։ Գրիչ՝ Սարգիս։

Զ.— Մաշտոցյան մատենադարան, № 2544, ԺԴ դ.։

Է.— Մաշտոցյան մատենադարան, № 341, 1405 թ.։ Գրիչ՝ Սիմեոն վարդապետ։

Այս յոթ ձեռագրերում նկատելի է երկու օրինաչափություն՝ նյութերի հավասարաչափ (քիչ բացառությամբ) ու ծավալուն ընդգրկում և նյութերի համանման (մի քանի մասնակի խախտումներով) դասավորություն։ Որպեսզի ավելի ստույգ և հստակ պատկերացում տանք «Աղվեսագրքի» այդ ձեռագրերի կառուցվածքի ու ծավալի մասին, ստորև կբերենք համեմատական մի տախտակ,

---

33 «Արարատ», 1892, էջ 964։ «Գիրք Թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 503։

34 Անդ, էջ 533։

35 «Տեղեկագիր», 1945, № 2, էջ 81։

36 F. Macler, Catalogue des manuscripts armeniens et georgiens de la bibliotheque nationale, Paris, 1908, էջ 21։

37 Ա. Սյուրմեյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Ս. Քառասուն մանկանց եկեղեցւոյ Հալէպի, Երուսաղեմ, 1935, էջ 343։

38 Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, Վենետիկ, 1924, Բ, էջ 1063։

39 Անդ, էջ 860։

ուր նշված են ձեռագրերում առկա նյութերը իրենց հաջորդականությամբ և էջերով: Դժբախտաբար սույն ձեռագրերից չորսի էջերը չկարողացանք նշել, որովհետև ձեռագրերը չեն եղել մեր ձեռքի տակ: Համեմատական աղյուսակը կազմելիս հիմք ենք ընդունել Մաշտոցյան մատենադարանի № 750 ձեռագիրը: Այստեղ «Ժղլանքն» ունի շուրջ 70 նյութ կամ գլուխ*, որոնցից ոչ բոլորն են խորագրված, բայց համարակալված են: Նման համարակալում ունեն նաև վերոհիշյալ Գ, Է և այլ ձեռագրեր[40]: Սակայն ձեռագրացուցակների մեջ, մի շարք գլուխներ երբեմն խառնված-միացված են: Բերենք թեկուզ մի օրինակ. Բ. Սարգիսյանի Ձեռագրաց ցուցակում (Բ. հատոր, էջ 839) նկարագրված № 264 (Գ) ձեռագրի Գ. բաժանման մեջ ցուցակի հեղինակը ներկայացրել է «Ժղլանքի» այն նյութերը, որոնք մեր № 750 ձեռագրի մեջ արտացոլված են Դ—ԻԱ համարներով, այսինքն այս 18 նյութերը հանդես են եկել իբրև 1 նյութ: Այսպիսով ձեռագրացուցակները մեզ հնարավորություն չեն տալիս համեմատական աղյուսակում ցույց տալ «Ժղլանքի» շուրջ յոթանասուն նյութերի տեղն ու հաջորդականությունը բոլոր ձեռագրերում: Ստիպված ենք գոհանալ՝ նշելով № 750 ձեռագրի միայն այն նյութերը, որոնց համապատասխանները ընդհանրապես արտացոլված են ձեռագրացուցակներում և որոնք ներկայացնում են ամբողջ «Ժղլանքը»:

Ինչպես տեսնում ենք, համեմատված այս 7 ձեռագրերը «Ժղլանքի» պարունակությամբ հիմնովին նման են իրար, մանավանդ նրա նյութերի միևնույն քանակի և ծավալի ընդգրկմամբ: Այդ նյութերի հաջորդականությունը ևս համեմատաբար պարզ է, ինչպես ցույց են տալիս մեր ձեռքի տակ եղած երեք ձեռագրերի նշված էջահամարները: Հարկ է նաև նկատի ունենալ, որ սույն 7 ձեռագրերից առաջինը ընդօրինակվել է «Ժղլանքի» հեղինակի մահից ընդամենը 3 տարի հետո, ուստի անտարակույս նրա կենդանության օրոք ընդօրինակված մի ձեռագրից: Չմոռանանք նաև նշել, որ նրա ստացողը Կեռան թագուհին է, այսինքն՝ ղեկավարը այն արքունի տան, որտեղ, ամենայն հավանականությամբ, պահվում էր Հեթում Ա-ին ուղարկված «Ժղլանքի» սկզբնագիրը՝ համաձայն Վարդան Արևելցու իսկ պատվերին. «Թո՛ղ թագուհին պահէ, և ի պիտոյ ժամն առնոյք ի նմանէ...»[41]: Ուստի կարելի է ենթադրել, որ 1274 թ. արտագրված այդ ձեռագիրը ընդօրինակությունն է «Ժղլանքի» բուն սկզբնագրի և կամ նրա անմիջական հաջորդներից մեկի: Այսպես թե այնպես որոշ է, որ Արևելցու հեղինակած «Ժղլանքը» ամենամերձավոր ճշգրտությամբ է ի հայտ գալիս վերոհիշյալ 7 ձեռագրերում:

Ձեռագրերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ «Ժղլանքն» իրապես բազմաթիվ և բազմազան նյութերից կազմված ընդարձակ մի ժողովածու է: Այս մասին հիշատակություն ունի ինքը՝ Արևելցին վերը բերված իր հիշատակարանում, որտեղ հայտնում է, թե գրել է ոչ միայն Հեթում Ա-ի խնդրած նյութերի մասին, այլև սիրով ավելացրել է իր շարադրանքը այլ հարցերի վերաբերյալ. «...Եւ յիշեա՛ (Հեթում Ա.—Փ. Ա.) զոր ի ձեռն Թորոսի հրամայեցեր

---

* Հարկ է նշել, որ համարակալված այս 70 նյութերը պայմանականորեն են բաժանված իբրև առանձին միավորներ և ոչ ամեն մի առանձին համար կրող նյութ մյուսներից անկախ բովանդակություն ունի: Նյութ ասելով՝ մենք նկատի ունենք համարակալված այս կամ այն միավորը:

40 Տե՛ս Մաշտոցյան մատենադարանի № 341 և Վենետիկի Մխիթարյանների մատենադարանի № 264 ձեռագրերը:

41 Ձեռ. № 341, էջ 104բ:

վասն եղաբերից կանանցն գրել ձեզ և ի խորհուրդ պատարագին. և ապա երեսաւք յԱնդրուն հրամաեցիք, որ գրեար ձեզ ժղլանք ի մեկնութենէն քերականին։ Եւ ես այլ յաւելի սիրով գրել ձեզ ձեռամբ լուծմունս յԱւետարանէն և յԱռաքելոցն»[42]։ Մի այլ տեղ դարձյալ գրել է. «...այս բաւական է, որ չնեղանէք, վասն չարչարանացն և իւղաբերիցն լիով է, յայլ բաներ գնասցուք»[43]։

«Ժղլանքի» խորագրում, իբրև հեղինակ, նշված է Վարդան Արևելցին։ Մի այլ աշխատության դեպքում այսքանն էլ կբավեր հավաստելու հեղինակի ինքնությունը։ Լինելով մի շարք ինքնուրույն նյութերի ժողովածու, անցնելով երկար ճանապարհ և ժամանակի ընթացքում ենթարկվելով նույնիսկ ծավալային որոշ փոփոխության, «Ժղլանքը», սակայն, պահանջում է անհրաժեշտ ճշտումներ և լրացուցիչ փաստեր։ Բարեբախտաբար նրանք քիչ չեն և մեծ մասը նրանցից առկա է բուն իսկ «Ժղլանքի» մեջ։

| | Վերնագրեր կամ սկզբնատող | Մատ. 750 | Փարիզ 12 | Հալեպ 183 | Վենետ. 266 | Վենետ. 261 | Մատ. 2344 | Մատ. 341 |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 2 | էջ | | | | | էջ | էջ |
| 1 | Հրամանն պատկառեցուցիչ | 1ա | ունի | ունի | ունի | ունի | 3ա | 1ա |
| 2 | Նշխար կաթի | 5բ | » | » | » | » | 8ա | 5ա |
| 3 | Մատթէոս Թարգմանի երգ | 7բ | » | » | » | » | 10ա | 7ա |
| 4 | Լինի և այլ պատճառ | 21բ | » | չունի | » | » | 26ա | 21ա |
| 5 | Յովհաննէս յետ ՄԻ | 36ա | » | » | » | » | 44բ | 32բ |
| 6 | Աւագակն, որ ընդ | 38բ | ունի | չունի | ունի | ունի | 47ա | 34բ |
| 7 | Կենսաբուխ սուրբ | 46ա | » | ունի | » | » | 61ա | 41ա |
| 8 | Զինչ է հրագալուցին | 50ա | » | » | » | » | 65ա | 44բ |
| 9 | Ո՞ր է կերպարան ծառային | 51ա | » | » | » | » | 66ա | 45բ |
| 10 | Բնութիւն է սկիզբն | 51բ | » | » | » | » | 68ա | 108ա |
| 11 | Թէ որպէս իմանի Աստուած | 54ա | » | » | » | » | 70բ | 46ա |
| 12 | Զայլ աւուրսն արարչութեան | 76ա | » | » | » | » | 104ա | 64ա |
| 13 | Եւ զետ եյանէր | 79բ | » | » | » | » | 109բ | 66բ |
| 14 | Շատ է յայդ գրոյս | 98բ | » | » | » | » | 138ա | 81ա |
| 15 | Մովսէսի որդիքն ի՞նչ | 103ա | » | » | » | » | 145ա | 84բ |
| 16 | Զի՞նչ է, որ ասէ Դաւիթ | 109ա | » | » | » | » | 153բ | 89բ |
| 17 | Միշտ կամիմ գիտակ գոլ | 122ա | » | » | » | » | 174բ | 100ա |
| 18 | Նշանագիրք | 126ա | » | չունի | » | » | 181բ | 105բ |
| 19 | Թուղթ Պիղատոսի | 129բ | չունի | ունի | » | » | 185ա | չունի |
| 20 | Հարցմունք գլխոյին | 138բ | ունի | » | » | » | 196բ | 138ա |
| 21 | Թուղթ առ Հեթում | չունի | » | » | » | չունի | 213ա | չունի |
| 22 | Այլ ոճ վիճելոյ ընդ | 151ա | » | » | » | ունի | | 122ա |
| 23 | Վասն օրհնութեան եկեղեցւոյ | 161ա | » | » | » | » | | 131ա |
| 24 | Վասն անխմոր հացին | 162բ | » | » | » | » | | 132ա |
| 25 | Յաղագս ժողովոց | 163բ | » | » | » | » | | 133ա |
| 26 | Գործուորք որ ի մարդն | 167բ | » | » | » | » | 211ա | 137բ |
| 27 | Նորին Վարդանայ՝ Աղօթք | 169ա | » | չունի | » | չունի | 223ա | չունի |
| 28 | Աղօթք Աստուածածնին | 175բ | » | ունի | » | » | չունի | » |
| 29 | Աղօթք առ Ս. Խաչն | 176ա | » | » | » | » | չունի | » |
| 30 | Տաղական բանին ցոյցք | 168բ | » | » | » | » | 212ա | |
| 31 | Վասն բանին մասանց | 142ա | » | » | » | » | 201ա | |

Այսպես օրինակ. նրա նյութերից մի քանիսի վերնագրերում, բոլոր ձեռագրերում անխտիր, կրկնված է Վարդան Արևելցու անունը իբրև հեղինակ։ Այդ

42 Ձեռ. № 341, էջ 103ա։
43 Ձեռ. № 750, էջ 38բ։

նյութերի թիվը հասնում է 8-ի։ Դրանք են մեր № 750 ձեռագրում եղած համարակալման թվերով Ա, Բ, ԺԸ, ԺԷ, ԻԴ, Լ, ԾԴ, ԿԷ նյութերը։ Իսկ ԻՁ և ԼԱ համարները կրող նյութերի վերջում դարձյալ կա Արևելցու անունը և խնդրվում է հիշել նրան։ Այս հիշատակությունները գալիս են կրկին անգամ ապացուցելու, որ հիշյալ նյութերի հեղինակը ինքը՝ Վարդան Արևելցին է։

«Ժղլանքի» գրեթե յուրաքանչյուր նյութի խորագրում կամ բուն բնագրի մեջ կա մի որևէ ուղղակի խոսք կամ ակնարկ ուղղված Հեթում Ա. Թագավորին։ Այս երևույթը «Ժղլանքը» դարձնում է մի ամբողջական, ներքնապես միաձույլ և, մանավանդ, մտերիմ զրույց։ Ուղղակի այդ խոսքերի մեջ, որոնց շնորհիվ հեղինակը անընդհատ կապի մեջ է պատվիրատու արքայի հետ, երբեմն կա որոշակի թելադրանք, խրատ և այս կամ այն բարի խորհուրդը։ Նրանց կարելի է մեկ կամ նույնիսկ մի քանի անգամ հանդիպել Ա—ԺԷ, ԻԵ, ԽԱ—ԽԴ, ԽԵ—ԽԸ, ԾԲ, ԾԴ, ԾԷ—ԾԹ և ԿՁ նյութերի մեջ[44]։ Ուստի դրանք ևս, անտարակույս, պատկանում են Արևելցու գրչին։

Ծ, ԾԱ նյութերն հիմնականում ունեն միևնույն բովանդակությունը, շարունակում են մեկը մյուսին և սերտորեն կապված են ԾԲ նյութին, որի հեղինակը, ինչպես արդեն ցույց ենք տվել, Վարդան Արևելցին է։

ԿԸ և ԿԹ նյութերը աղոթքներ են, հաջորդում են ԿԷ աղոթքին և ունեն լեզվա-ոճական նույն հատկանիշները, ինչ որ այն ունի։ Վերջինիս խորագրում, ինչպես արդեն նշել ենք, Վարդան Արևելցին հիշատակված է որպես հեղինակ։ Կարծում ենք, որ նրա հեղինակային իրավունքը տարածվում է նաև հիշյալ երկու աղոթքների վրա։

Չմոռանանք ասել, որ ոչ բոլոր համարակալված նյութերն են ուրույն միավոր հանդիսանում։ Երբեմն մեկ ընդհանուր միավոր ունի մեկից ավելի համար։ Ըստ այսմ մենք կարծում ենք, որ Ծ, Կ—ԿԵ նյութերը նույնպես պատկանում են Վարդան Արևելցու գրչին, որովհետև, ըստ էության նրանք ենթամասերն են այն նյութերի (ԾԷ—ԾԹ), որոնց հեղինակային պատկանելիության մասին արդեն խոսք եղել է վերը։

ԾԴ նյութը, որն համընկնում է «Նշանագիրք իմաստնոցի» հայտնի ցանկը, հազիվ թե այլուստ պատահաբար մուտք գործած լինի «Ժղլանքի» մեջ։

Հնագույն ձեռագրերում այն ընդգրկված է որպես «Ժղլանքի» մի մաս։ Եթե Վարդան Արևելցին հարկ է համարել Հեթում Ա-ի համար գրել քերականություն, լեզվի կամ գրերի մասին, ապա անհավանական չէ, որ նա նշանագրերի մասին ևս գրեր։ Մեզ թվում է ճիշտ է Ա. Աբրահամյանը, երբ գտնում է, որ նշանագրերի սույն ցանկի հեղինակը Վարդան Արևելցին է[45]։

«Ժղլանքի» նյութերից երկուսի վերնագրերում ի միջի այլոց գրված են. «Վանական վրդ-ի ասացեալ», «Այլ բան Վանականին ասացեալ»։ Շատերը աներկբայորեն կարծել են, որ այդ երկու նյութն էլ Հովհ. Վանական Տավուշեցունն են, առանց հաշվի առնելու, որ «վանական» բառի առկայությունը բավարար հիմք չի կարող հանդիսանալ։ Չէ՞ որ «վանական» մակդիրով այլ վարդապետներ ևս հիշատակվում են մեր մատենագրության մեջ։ Ասենք նաև, որ խնդրո առարկա երկու նյութն էլ, ինչքան մեզ հայտնի է, որևէ ձեռագրում չեն

44 Ձեռ. № 750, էջ 38բ—54ա, 109ա, 121ա, 143բ։

45 Մանրամասն տե՛ս Ա. Աբրահամյան, Հայ գրի և գրչության պատմություն, Երևան, 1959, էջ 151—156։

հանդիպել «Ժղլանքից» առաջ, ոչ մի անգամ «Յովհաննէս» անունը զետեղված չի եղել նրանց վերնագրերում, մինչդեռ «Վարդան» անունը արդեն նկատվել է մի շարք ձեռագրերում[46], որոնցից Մաշտոցյան մատենադարանի № 3236 ձեռագիրը ԺԴ դարի ընդօրինակություն է։ Թերևս հետագա արտագրությունների ժամանակ «Վարդանը» դուրս է ընկել, և «վանական» մակդիրը ընդունվել է իբրև հատուկ անուն և կարծվել, որ հիշյալ նյութերի հեղինակը Հովհ. Տավուշեցի վանական վարդապետն է[47]։

Հարկ ենք համարում այստեղ մեջ բերել նաև Վենետիկի Մխիթարյան մատենադարանի 1366 թ. ընդօրինակված ձեռագրի հիշատակարանը, որտեղ ասված է, որ «Ժղլանքի» գոնե 66 նյութերի հեղինակը Վարդան Արևելցին է. «Փառք... որ ետ կարողութիւն ակարութեանս իմոյ հասանել ի գլուխ տառիս, որ է Վարդան վարդապետի արարեալ բանս ԿԶ»[48]։

Այսպիսով ընդամենը երկու նյութ է մնում, որոնք թեև ընդգրկվել են «Ժղլանքի» կազմի մեջ, բայց, թերևս, Վարդան Արևելցու գրչին չեն պատկանում։ Դրանք են «Թուղթ Պիղատոսի առ Տիբերիոս» և «Հարցմունք Դշխոյի և պատասխանիք Սողոմոնի»։ Նրանց մուտքը «Ժղլանքի» կազմի մեջ համենայն դեպս, դժվար թե պատահաբար տեղի ունենար. թերևս դրանք, «Ժղլանքի» հեղինակի կողմից ուսանելի են համարվել երիտասարդ թագավորի համար, ուստի և զետեղվել են «Ժղլանքի» մեջ։ Ի դեպ, ինչքան մեզ հայտնի է, սույն երկու նյութը մեր ձեռագրերում առաջին անգամ հանդիպում են «Ժղլանքի» կազմում։ Արդյոք Վարդան Արևելցին չէ՞ նրանց հայերեն թարգմանիչը։ Թերևս։

«Ժղլանքը» գրելիս Վարդան Արևելցին օգտագործել է գրավոր և բանավոր բազմաթիվ աղբյուրներ։ Այդ հայտնի է դառնում առաջին հերթին իր իսկ վկայություններից։ Բայց, ինչպես ընդունված է եղել իր ժամանակ, միշտ չէ, որ նա հիշատակել է օգտագործած աղբյուրները։ Մեր որոնումներից պարզվել է, որ կան նաև այնպիսինները, որոնք նա ձեռքի տակ ունեցել է, սակայն անունները չի նշել։ Այնուամենայնիվ, «Ժղլանքի» տարբեր հատվածներում կարելի է հաճախ հանդիպել օգտագործված աղբյուրները մատնանշող վկայություններ։ Օրինակ. «Յոհան Ոսկիբերան և Կիւրեղ Աղէքսանդրու չորք են յասել», «Բայց Եփրեմ Ասորի նոր բան է ասցել», «Բայց Ստեփաննոս Սիւնեցի սքանչելի իմաստասէրն, քննեալ ստուգիւ զժամանակն յԽԴ ամաց ասէ», «...այլ գրեմ քեզ զնշիչէին, զոր սիրեմ մանաւանդ», «Մերն Անանիայ ասէ», «Ի Կղէմ գիրքն յասել է», «Եւ Կիւրեղ ասէ», «Եւ սուրբն Աթանաս վկայէ», և այլն[49]։ Այս կարգի հիշատակություններից իմացվում է, որ նա հիմնականում օգտագործել է Հովհ. Ոսկեբերանի, Եփրեմ Ասորու, Եվսեբիոս Կեսարացու, Կյուրեղ Աղեքսանդրացու, Ակակիոսի, Գր. Աստվածաբանի, Աթանասի, Եղիշեի, Անանիա Շիրակացու,

---

46 Կանայան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Թիֆլիզի Ներսիսյան վարժարանի, Թիֆլիզ, 1893, էջ 32։ Հ. Աճառյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի, Վիեննա, 1910, էջ 48։ Բ. Կյուլեսերյան, Ցուցակ ձեռագրաց Անթիլիասի Կարմիր վանուց և շրջակայից, Անթիլիաս, 1957, էջ 238։ Մաշտոցյան մատենադարան, ձեռ. № 8132, էջ 29ա, 31բ, 3236, էջ 172բ, 176ա։

47 Այս մասին տե՛ս Հ. Ոսկյան, Հովհ. Վանականն և յուր դպրոցը, էջ 32։ Mulderman. Note sur Վանական Վարդապետին ասացեալ Բան հաւատալի ազգիս Մերում. «Հանդէս ամսօրեայ», 1925, 9—10, էջ 463։

48 Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեան ի Վենետիկ, Բ, էջ 264։

49 Մաշտոցյան մատենադարան, ձեռ. № 750, էջ 1ա, 3բ, 10բ, 63ա, 70ա, 118բ, 150ա, 155բ։

Ստեփանոս Սյունեցու, Հովհան Վանականի և այլոց աշխատությունները: Հայտնի է դառնում նաև, որ նա իր տրամադրության տակ ունեցել է ասորական, եբրայական և հունական այլ աղբյուրներ: Երբ նա գրում է, թե «ասա են եբրայեցիք և ասորիք», «արտաքին իմաստասէրքն այսպէս ասցեն», «զոր Ֆրանգն Բիրգադուր ասեն», «յոյնն և ասորին հոգմ ասեն, զի ան նաստ մի է հոգմոյ և հոգւոյ անուն», «Բայց գրաս յասորոց»[50], նկատի ունի հիշյալ լեզուներով գրված իր օգտագործած աղբյուրները:

«Ժղլանքի» համեմատությունը վերը հիշատակված հեղինակների երկերի հետ մեզ բերել է այն եզրակացության, որ Վարդան Արևելցին օտար հեղինակներից քիչ անգամ է բառացի օգտվել, հիմնականում շարադրել է նրանց տեսակետները: Այսպես օրինակ. նա մի անգամ վկայակոչել է Եփրեմ Ասորուն, նրա տարբեր կարծիքները ամփոփել, բայց ընդամենը մեկ անգամ նրանից բառացի մեջբերում է արել. «Բայց Եփրեմ ասէ, թէ նշան եդ աստուած չսպանանել զԿային», որը Եփրեմ Ասորու մոտ հետևյալ կերպ է. «Եւ եդ (աստուած — Փ. Ա.) ի Կայէն նշան, զի մի ոք իշխեսցէ սպանանել զնա»[51]: Այլ առթիվ միայն ներկայացրել է նրա կարծիքը[52]: Այլուր խոսելով Քրիստոսի մեկ թե երկու բնության դավանաբանական վեճի մասին, այլ հեղինակների թվում հիշատակել է նաև Աթանաս Աղեքսանդրացուն: Այս դեպքում ևս նա վերապատմել է նրա դավանաբանական մեկ տեսությունը[53]. Նա մոտավորապես այսպես է վերաբերվել նաև մյուս, հատկապես օտար եկեղեցական հայրերի աշխատություններին:

Սակայն քիչ այլ է պարագան Եղիշեի և Հովհան Վանականի աշխատություններից օգտվելու խնդրում: Իր իսկ վկայություններից հայտնի է դառնում, որ նա նրանց դիմել է հաճախ: Եղիշեի անունը մասնավորապես շատ է հիշատակվել արարչագործության վերաբերյալ հատվածներում: Իր «Մեկնութիւն Հնգամատենին» աշխատության մեջ, որտեղ նույնպես հանգամանորեն մեկնաբանել է Ծննդոց գիրքը, դարձյալ վկայակոչել է Եղիշեին և քաղվածքներ արել նրա աշխատություններից: Արևելցու այս երկու գործերը տվյալ խնդրում առնչվում են մեկը մյուսին: Լ. Խաչիկյանը իր մի անտիպ աշխատանքում ցույց է տվել Արևելցու «Մեկնութիւն Հնգամատենին» երկասիրության և Եղիշեի մեզ չհասած «Մեկնութիւն արարածոց»-ի առնչությունները և պարզել, որ առաջինի մեջ երկրորդից շատ հետքեր են պահպանվել[54]: Այսպիսով «Ժղլանքը» ևս ուղղակիորեն կապվում է Եղիշեի հիշյալ աշխատության հետ:

Ինչ վերաբերում է «Ժղլանքի» և Հովհան Վանականի երկերի աղերսներին, պետք է ասել, որ նրանք համեմատաբար ավելի նկատելի են: «Ժղլանքի» և Հովհան Վանականի «Հարցմունք և պատասխանիք» աշխատության համեմատությունը ցույց է տալիս, որ նույնիսկ բառացի հատվածներ են մուտք գործել երկրորդից առաջինի մեջ: Այսպես օրինակ.

---

50 Ձեռ. № 750, էջ 62ա, 147ա, 13բ, 60ա, 57ա:

51 Անդ, էջ 94ա: Հմմտ. Եփրեմ Ասորի, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1836, հ. Ա., էջ 35, նաև «Գիրք Ծննդոց», գլ. Դ. հմր. 15:

52 Ձեռ. № 750, էջ 3բ, հմմտ. Եփրեմ Ասորի, նշվ. աշխատ., հ. Բ, էջ 203:

53 Ձեռ. 750, էջ 155ա, 155բ: Հմմտ. Աթանաս, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1899, էջ 526, 481:

54 Լ. Խաչիկյան, Եղիշեի Արարածոց մեկնությունը (անտիպ):

«Ժղլանք»

«Այսպէս ի՞նչ է, որ գրեալ է ի տեսիլ սրբոյ ումեմն, թէ ի վերայ Վիրապին գոչէ հրեշտակապետն։

Պատ.— Դիոնիսիոս յասել է, թէ ամէն ազգի հրեշտակապետ կայ վերակացու հանդերձ հրեշտակաւք։ Արդ յայտ է, թէ ամէն հրեշտակապետ զիւր յանձնեալ ազգն կոչէ ձայնիւ յայտնեցն, որ ազգին առաջնորդն չարչարանաւք ածեալ է զազգն ի հաւատս տեառն։ Եւ այսպէս Հայոց, վերակացուն ի վերայ Վիրապին հնչեցեալ առ սուրբ Գրիգոր ժողովին Հայաստանեայց, և նայ ընդ իւր առեալ զհաւան վերանայ առաջի Քրիստոսի ասելով՝ թէ ահաւասիկ ես և մանկունք իմ, զոր ետուր ցիս աստուած»[55]։

«Հարցմունք և պատասխանիք»

«Հց.— Այն ի՞նչ է, որ ասեն, թէ ի վերայ Վիրապին հարկանի։

Պատ.— Առասպել մի՛ համարիր, Դիոնիսիոս ասել է հաստատ զՄուսէսի բանն՝ «կացոյց սահմանս հեթանոսաց ըստ թւոյ հրեշտակաց», թէ ամէն ազգի հրեշտակապետ հրեշտակաւք վերակացու է, որ ազգին բանն և գլուխն է, ա՛նդ հնչեցուցանէ, որ ազգին առաջնորդ է զիւր ժողովուրդն առեալ ընդ յառաջ երթայ Քրիստոսի ասելով. ահա ես և մանկունք իմ...»[56].

Վարդան Արևելցին շատ ուշադիր վերաբերմունք է ցուցաբերել իր օգտագործած աղբյուրների նկատմամբ, քննադատաբար և պատասխանատվության զգացումով է մոտեցել նրանց, վերստուգել և վերաիմաստավորել է դրանք։ Միմիայն վերջնականապես համոզվելուց հետո է ճշտել իր գիրքն ու տեսակետը։ Իզուր չէ, որ նա նշել է. «Շատ պատճառ ասեն, բայց հաւանականն այն է», «...այլ քննելի բան է», «Այն, որ ասեն թէ Երեմիա ի Բաբելոն է գնացել, չէ իրաւ...» են[57]։

Աղբյուրների առատությունն ու բազմազանությունը և նրանցից օգտվելու իր քննադատական եղանակը վկայում են հեղինակի գիտական բարեխղճության, լայն մտահորիզոնի և լեզուների իմացության մասին։



«Ժղլանքի» մեջ շոշափվում են բազմապիսի հետաքրքրական խնդիրներ։ Հիմնականում կրոնա-դավանաբանական հենք ունեցող բազմաթիվ հարցերին հաղորդված է հասարակական-քաղաքական, գիտական և մշակութային արժեք։ Այնտեղ շարադրված են տվյալ ժամանակի համար առաջադեմ մտքեր ու տեսակետներ։

Վարդան Արևելցին հայ եկեղեցու դավանանքը անաղարտորեն ներկայացնելու ջատագովությամբ ու պատրվակով քննության է առնում առավելապես այնպիսի հարցեր, որոնք մանավանդ այդ օրերին, կրել են ազգային-քաղաքական բնույթ։ Նա չի հետապնդում սոսկ կրոնական նպատակ, այլ հետևելով նախորդ նշանավոր հայ եկեղեցական գործիչներին, իր հայրենասիրական պարտքն է կատարում և անզիջում հետևողականությամբ պաշտպանում հայ ժողովրդի ազգային քաղաքական շահերը։ Նրա այսօրինակ ելույթը առանձնապես անհրաժեշտ էր տվյալ ժամանակաշրջանում, երբ Բյուզանդիան ու Վատիկանը փորձում էին ամեն կերպ շահագործել Կիլիկյան հայկական թագավորության քաղաքական դժվարությունները։ Հեղինակը սրտառուչ զրուցում է Հեթում Ա-ի հետ։ Ահա թե ինչ է գրում նա այս առթիվ. «Եւ ի զանազգեցեցդ զգուշացուր,

55 Ձեռ. № 750, էջ 41բ։
56 Ձեռ. № 5611, էջ 82ա։
57 Ձեռ. № 750, էջ 102ա, 103բ, 105բ։

որ ընդ սատանայ և ընդ այնպիսի թագաւորին իւրեանց շմորեն, կամին և ընդ մեզ շմորել. իւրենք գիտեն: Թէ ընդ քեզ հաւատ հարցանեն և պահանջեն, դու հրամէ, թէ ես զիմ առաջնորդացն ունիմ հաւատս և զիմ եկեղեցւոյն, և նոցա պարտիմ համարս տալ և ոչ ձեզ[58]...»: Զգալի է այս խոսքերին հաղորդված ազգային ինքնագիտակցության և արժանապատվության շեշտը, որով տոգորված է «Ժղլանքն» ընդհանրապես: Մի այլ տեղ նույն ոգով է ասում. «Եթե ասեն թէ, ո՞ր բնութիւն է զոր զուք մի ասէք և զոր ուրանայք, ասայ, թէ ուրացութիւն մեր չէ գործ ի վերայ ճշմարտութեան, այլ ձեր»[59]:

Այս տեսանկյունով «Ժղլանքի» կրոնա-դավանաբանական նյութերի հասարակական դերն ու նշանակությունը շատ բարձր են: Բավարարվենք խոսելով նրանցից միայն մեկի մասին, որը ամբողջությամբ դավանաբանական բնույթի է և շատ բնորոշ հեղինակի քաղաքական և հայրենասիրական տրամադրությունները դրսևորելու տեսակետից: Դա Հեթում Ա-ին հղված հայտնի պատասխան թուղթն է, որի մասին արդեն խոսք եղել է քիչ վերև: «Պատասխան այդ թուղթը հայ դավանաբանական գրականության գլուխ գործոցը կարելի է համարել»—գրել է Լ. Խաչիկյանը[60]: Իր նպատակասլացությամբ, ջերմ շնչով, սուր ու վճռական տրամադրությամբ այն բավական ազդեցիկ դեր է կատարել հայ միջնադարյան պատմության մեջ: Երբեմն ցասումով, երբեմն էլ կծու սրամտությամբ նրանում հերքված են կաթոլիկության հավակնոտ դոգմաները և նրա կողմից հայ եկեղեցու հասցեին ուղղված մեղադրանքների ամբողջ շարքը:

Պատմությունից հայտնի է քրիստոնեության գլխավոր կենտրոնների, այսպես կոչված աթոռների, հատկապես Հռոմի և Բյուզանդիոնի հակամարտությունը «նախապատիվ» աթոռի իրավունքը սեփականացնելու համար: Որոշ է, որ այդ արվում էր, որպեսզի քաղաքական ավելի լայն ազդեցության ոլորտ ու գերիշխանություն ձեռք բերվեր: Իսկ այդպիսի հավակնության դեմ ծառանում է մեր հեղինակը՝ հեգնելով նրանց կրոնական հիմնական պատճառաբանությունը: Նա հարց է տալիս, թե ինչո՞ւ և ինչպե՞ս է, որ Հռոմը քրիստոնեության առաջին աթոռն է համարվելու: Եթե լոկ նրա համար, որ Պետրոս առաքյալը այնտեղ սպանվեց, ապա ի՞նչ պիտի ասել Երուսաղեմի մասին, որտեղ խաչվել է ինքը՝ Քրիստոսը. «...ընդէ՞ր եղև Հռոմ առաջին. թէ զՊետրոս իւրենք սպանին ի Հռոմ, զՊետրոսի աստուածն հրէայքն սպանին յԵրուսաղէմ. Երուսաղէմ ընդէ՞ր չէ հրամանատու ամենայն երկրի»[61]: Ուշադրության արժանի են այս պարբերության մանավանդ վերջին խոսքերը, որոնք շատ հատկանշական ու բնորոշ են Հռոմի (Վատիկանի) քաղաքական հիմնական ձգտումը ընդգծելու համար: Այնուհետև նա դառնացած ժխտում է վերջինիս, այսպես ասած, «փրկարար» առաքելությունը հայ ժողովրդի կյանքում: Ո՞ւր է, ե՞րբ է եղել այդ: Եթե Վատիկանը նոր է հայ ժողովրդին կամենում «գտած» լինել իբրև քրիստոնյա ժողովուրդ, ապա նա շատ է ուշացած, իսկ եթե օգնելու և «փրկելու» (ոչ կաթոլիկական իմաստով) մտադրություն ունի, ապա խնդրեմ՝ դրա համար առիթներ շատ կան. «Ո և Ի (620) դուստ են հայք յենկալէն ի վեր, և կան որ աւեր են, և կան որ ի ծառայութեան. թէ կու ցաւին ընդ հայոց, թող երթան ա-

58 «Գիրք թղթոց», Տփղիս, 1901, էջ 509:

59 Ձեռ. № 750, էջ 152ա:

60 Լ. Խ ա չ ի կ յ ա ն, Կոստանդին Բարձրբերդցու խրատական թուղթը... «Բանբեր Մատենադարանի», 1958, № 4, էջ 269:

61 «Գիրք թղթոց», էջ 504:

զատեն և խուսին ընդ հայոց վարդապետարանաւն և ընդ դպրատունն, որ ոչ բլայթով և խարէութեամբ ուսուցանեն և ուսանին որպէս դոքա (կաթոլիկները — Փ. Ա.), այլ ճշմարտութեամբ և հիմամբ առաջնոցն. և ապա գան առ մեզ»[62]:

Հայ ժողովուրդը դարավոր պայքար է մղել հավասարապես և՛ Բյուզանդիայի, և՛ Վատիկանի դեմ իր քաղաքական անկախությունը, ազգային դիմագիծը, ավանդությունները, լեզուն պահելու համար: Նա ամեն կերպ ջանացել է, որ չնահանջի նրանց ոտնձգությունների և քաղաքական թելադրանքների առաջ և հակառակ դառն փորձություններին, նա չնահանջեց: Մեր հեղինակը հայ եկեղեցու հակառակորդների մասին իր ասելիքը այսպես է եզրափակում. «Ապա գիրեանց պրուեստակեայ առասպելեան խակի չընդունիմք, այլ արհամարհեմք և չիշխեն ի վերայ մեր ամենեին»[63]:

Կարծում ենք այսքանը բավ է ասելու համար, որ Վարդան Արևելցու «Ժղլանքի» մեջ տեղ գտած կրոնա-դավանաբանական նյութերը մեկը մյուսից առավել կամ նվազ չափով տոգորված են հայրենասիրությամբ, ազգային արժանապատվության զգացումով և քաղաքական հեռատեսությամբ: Հենց այս էլ նրանց պատմական արժեքն է և հեղինակի թանկագին լուման հայ հասարակական մտքի պատմության մեջ:

Գնահատության արժանի են «Ժղլանքի» նաև այն նյութերը, որոնց մեջ արծարծված են բնափիլիսոփայության վերաբերյալ մի շարք հարցեր:

Վարդան Արևելցին, լինելով միջնադարյան նշանավոր աստվածաբան վարդապետներից մեկը, իր ստեղծագործությունների մեջ ամեն առիթով հաշվի է առնում աստվածաշնչի վերին հեղինակությունը աստուծո և բնության փոխադարձ կապերը մեկնաբանելիս: Սակայն, միաժամանակ, նա ուշագրավ և առաջավոր շատ մտքեր է արտահայտել առավելապես այն ժամանակ, երբ անդրադարձել է բնափիլիսոփայական հարցերի: Այսպես օրինակ, քննելով բնությունը՝ նա եզրակացնում է. «Բնութիւն է սկիզբն շարժման ու դադարման»[64]: Նշանակում է նա բնությունը դիտում է անընդհատ շարժման, դադարի և փոփոխության մեջ: Բնությունից դուրս ոչ շարժում կա, ոչ էլ հանգիստ: Հատկանշական է, որ նա այս շարժումը չի դիտում իբրև սոսկ տեղաշարժություն, այլ նաև, որոշ առումով, ներքին կերպարանափոխության, մի բանից մյուսի անցումն, մի ֆիզիկական և որակական վիճակից մյուսի վերածումն: Այս կապակցությամբ նա հետևյալն է գրել. «Բնութիւն է սկիզբն իւրաքանչիւր շարժման և կայանի, այսինքն երկիր շարժի ի բոյս, և ի կենդանիս և ի ձկնս»[65]:

«Ժղլանքի» հեղինակը նույնպես կարծում է, որ բնությունը կազմված է չորս հայտնի տարրերից՝ ջրից, հողից, օդից և կրակից: Այս առթիվ հետաքրքիր են նրա հետևյալ խոսքերը. «...զի ջուր ցամաքեալ հող լինի, և հող դանձեալ՝ ջուր. և ջուր ջեռեալ և հուր շիջեալ՝ օդ: Եւ հուր զջերմութիւն և զլոյսն ի բաց եղեալ՝ լինի երկիր. և օդ զխոնաւութիւն ի բաց եղեալ՝ լինի հուր»[66]:

---

62 «Գիրք թղթոց», էջ 509.
63 Անդ, էջ 509:
64 Ձեռ. 750, էջ 51բ:
65 Անդ, էջ 147բ:
66 Անդ, էջ 62բ:

Երկնային մարմինների ֆիզիկական կազմության վերաբերյալ նա ունի ուշագրավ տեսակետ, ըստ որի նրանք առաջացել են ինչ որ «մրրատեսակ» թանձրամածություններից. «եւ զայլ մրրատեսակ թանձրունսն յէարկ (ասարված — Փ. Ա.) յաստեղացն նիւթն»[67]: Նա աներկմտորեն միանում է այն գիտնականներին, որոնք գտնում են, որ տիեզերքում շատ աստղեր կան ավելի մեծ, քան արևը, և եթե փոքր են երևում, այդ միմիայն հեռավորության պատճառով է. «Բայց ոմանք ասեն, թէ աստեղք մեծամեծք են քան զարեգակն, բայց հեռագոյնք են և բարձր, գողանան զմեր տեսանելիս»[68]: Նա հավաստում է, որ ոչ բոլոր աստղերն են հրեղեն, այլ կան նաև այնպիսինները, որոնք «յոյժ ցրտագոյն են և ամենևին սառնամանիք»: Նա խոսում է նաև երկնային մարմինների շարժման մասին, որոնք նրա կարծիքով, ընթանում են «ընտրութեամբ և անմոլար», դէպի «հարաւ» և դէպի «հիւսիս», երբեմն աղորիքի, երբեմն էլ՝ անիվի նման, սակայն «Բ ուրն ընդ մի շաւիղ չերթան»[69]:

Բուսական աշխարհի առաջացման մասին նա այսպիսի հետևության է հանգել. «Բղխեաց երկիր բերս բուսոյ անթուական բազմութեամբ և անսպառ զաւակօք, ոչ խառնարնդորս և մածուցեալս, այլ բազմորիշ ընտրութեամբ, տոհմաւ և ազգաւ, համով և հոտով, և գունով, և ձևով, հասակով»[70]:

Նա կյանքը բխեցնում է ջրից. թեև մյուս երեք տարրերի մասնակցությունն էլ այդ գործում անհրաժեշտ է համարում: Բույսը հողով միայն չի աճի, այլ անհրաժեշտ է հատկապես ջուրը, քանի որ վերջինիս մեջ առկա են մյուս երկու տարրերը: Առանց ջրի կյանքն անհնար է. «Ելին ի ջրոյ լուղակք և թռչունք»[71]:

Վաղ շրջանի հայ քերականագիտության պատմության մեջ նշանակալից տեղ են բռնում Վարդան Արևելցու քերականական երկու աշխատությունները՝ «Մեկնութիւն քերականին» և «Վասն բանին մասանցը»: Թեև երկուսն էլ գրվել են Հեթում Ա-ի խնդրանքով, բայց մենք քննության կառնենք վերջինը, քանի որ միայն այն, ինչպես ձեռագրերի ուսումնասիրությունն է ցույց տալիս, «Ժղլանքի» անմիջական մասն է կազմում:

Քերականական այս երկասիրությունը բանասիրության մեջ, մանավանդ վերջերս, շատ բարձր է գնահատվել, որպես ուրույն, իր ձևով հայ մատենագրության մեջ նախընթացը չունեցող արժեքավոր աշխատություն: Նրա մասին դիտողություններ են արել Լ. Խաչիկյանը, Գ. Ջահուկյանը, Ս. Ղազարյանը, Լ. Խաչերյանը, իրենց վերոհիշյալ երկերի մեջ:

Իրապես, ինչպես նշվել է, այն մեր քերականական գրականության մեջ հայոց լեզվի շարահյուսության մասին գրված ինքնուրույն անդրանիկ գործն է: Նրանում, առաջին անգամ լինելով, խոսքի մասերը քննված և բնորոշված են որպես նախադասության անդամներ, թեև նրանց տրված է ձևաբանական կատեգորիաների անվանում: Պետք է նշել, որ այստեղ գիտականորեն ոչ մի շփոթ չկա: Եթե շարահյուսական և ձևաբանական տերմինները որոշակիորեն չեն սահմանազատված, չի ճշտված յուրաքանչյուրի անվանումը, բայց գիտակցված է նրանց բնագավառը, նրանց տիրույթը: Մեր հեղինակը խոսքի մա-

67 Ձեռ. № 750, էջ 67ա:

68 Անդ, էջ 69բ:

69 Անդ, էջ 67բ, հմմտ. Հովհ. Վանական, Հարցմունք և պատասխանիք, Մատենադարան, ձեռ. № 3611, էջ 100ա:

70 Ձեռ. № 750, էջ 65ա:

71 Անդ, էջ 71բ:

ների ձևաբանական հատկանիշը երբեք էլ չի շփոթել նախադասության մեջ նրանց ունեցած ֆունկցիոնալ հատկանիշի հետ։ Նա, պարզապես, շարահյուսական ճշգված կամ արդեն ընդունված տերմիններ չլինելու պատճառով, իր սահմանումները, իր սույն բնագավառի գիտելիքները արտահայտել է արդեն հայտնի և ընդունված ձևաբանական տերմիններով։ Այստեղ էականն այն է, որ հայերենի շարահյուսություն գրելու առաջին և կարևոր քայլն արված է[72]։

Հեղինակը նշել է խոսքի ութ մաս՝ անուն, բայ, ընդունելություն, նախադրություն, մակբայ, դերանուն, հոդ և շաղկապ։ Այնուհետև նա համապատասխանաբար տալիս է յուրաքանչյուրի բնորոշումը, սահմանումը։

Սույն աշխատության մյուս կարևոր առանձնահատկությունն այն է, որ այն առաջին քերականական երկն է, որը զերծ է այս բնագավառի նախորդ երկերին հատուկ ճարտասանական, մեկնողական, փիլիսոփայական և բանաստեղծական տարրերից և ներկայանում է իբրև զուտ քերականություն[73]։ Իր միտքը բացատրելու համար նա դիմում է ամենապարզ օրինակների, որոնք վերցված են անմիջականորեն ժողովրդական կյանքից ու միջավայրից, նշում է այնպիսի անուններ, ինչպես Ստեփաննոս, Թորոս կամ Վասիլ, որոնք ոչ միայն Կիլիկիայում շատ տարածված էին, այլ և որոշակի անձանց անուններ էին, որոնց ճանաչում էին և՛ հեղինակը և՛ Հեթում թագավորը այստեղ արդեն ի հայտ է գալիս ոչ միայն առաջավոր գիտնականը, այլև մանկավարժը։

Ժողովրդական պարզ ու կենդանի խոսակցական լեզվի և ոճի տեղին ու վարպետ կիրառումը, այս փոքրիկ աշխատության մեկ այլ հատկանշական կողմն է[74]։

«Ժղլանքի» առավել արժեքավոր նյութերի թվում կան նաև այնպիսիները, որոնցում խոսվում է այն մասին, թե որ ժողովուրդներն են, որ ունեն գիր ու դպրություն, ինչպես տեղի ունեցավ հայոց գրերի գյուտը, ինչ են նշանագրերը, քանի գրքից է բաղկացած Աստվածաշունչը և այլն։ «Ժղլանքի» հեղինակը խորհրդածության նյութ է դարձրել նաև արվեստի բնագավառը՝ տաղաչափությունն ու երաժշտությունը։

Համաձայն այս նյութերի գիր ու դպրություն ունեցող Վարդանին ծանոթ ժողովուրդների թիվը եղել է 15, չհաշված ալվաններին, վրացիներին, խատայցիներին (չինացիներ), բուլղարներին (իմա բուլղար) և «այլք ևս»։ Թե ինչու է առանձնացրել վերջիններիս, որևէ պատճառ չի նշել նա, իսկ 15-ի մեջ գրավոր այլ աղբյուրների ցուցումներով ներառել է հետևյալ ժողովուրդներին՝ հայերին, եբրայեցիներին, լատիններին, խապանացիներին, հույներին, մարերին, հրեաներին, պարսիկներին, քաղդեացիներին, հնդիկներին, ասորեստանցիներին, փյունիկեցիներին, եգիպտացիներին, պամփիլացիներին, փռյուգացիներին[75]։

---

72 Գ. Ջահուկյան, Քերականական և ուղղագրական աշխատությունները հին և միջնադարյան Հայաստանում (V—XV դդ.), Երևան, 1954, էջ 245—255։ Լ. Խաչերյան, Հայ շարահյուսագիտական մտքի վաղ շրջանի պատմությունից, «Բանբեր Մատենադարանի», 1962, № 6, էջ 113—115։

73 Լ. Խաչիկյան, Վարդան Արևելցու «Վասն բանին մասանց» աշխատությունը, «Տեղեկագիր», ՍՍՀՄ Ակադեմիայի հայկ. ֆիլիալ, Երևան, 1960, էջ 86։

74 Ս. Ղազարյան, Միջին հայերեն, Ա գիրք, էջ 86։

75 Ձեռ. № 750, էջ 115ա։ Հմմտ. Հովհ. Վանական, Հարցմունք և պատասխանիք, Մաշտոցյան Մատենադարան, ձեռ. № 5611, էջ 70ա։

«Ժղլանքի» բազմավաստակ հեղինակը հայոց գրերի գյուտի մասին խոսել է բազմիցս՝ գրեթե իր բոլոր կարևոր աշխատությունների մեջ։ Այս պարագան վաղուց է իր վրա հրավիրել բանասերների ուշադրությունը։ Բանն այն է, որ գրերի գյուտի վերաբերյալ նրա հաղորդումները զգալի չափով տարբերվում են նախորդ հիմնական աղբյուրների՝ Կորյունի, Մ. Խորենացու, Ղ. Փարպեցու հաղորդած տեղեկություններից և ունեն իրենց ուշադրության արժանի կողմերը։

Ինչ վերաբերում է առանձնապես «Ժղլանքում» եղած համապատասխան հատվածին, պետք է ասել, որ չի կարելի այն զանց առնել Մեսրոպ Մաշտոցի գործունեության, հայոց գրերի գյուտի պատմության, գրերի ձևի և քանակի, օտար այբուբենների հետ ունեցած այս կամ այն առնչության և հարակից խնդիրները գիտական ամբողջական հետազոտության ենթարկելիս։

Հիշյալ հատվածում արծարծված են հետևյալ հիմնական հարցերը.

1. Հայերը ունեցել են նախամեսրոպյան գիր։

2. Դրանք քիչ են եղել և պահվել են Դանիելի մոտ։

3. Մեսրոպը ևս գնացել է Դանիելի մոտ նրա հետ գործակցելու և ասորական տառերը բազմակողմանիորեն ուսումնասիրելու համար։

4. Ասորական 22 տառերից Մաշտոցը «թարգմանել» է 17-ը և 5-ը թողել, որովհետև «եւ ջանային թէ թարգմանեն բառ մեր լեզուիս, չգայր ի բան այն Ե գիրն»[76]։

5. Մաշտոցը գտնում է ոչ միայն 6, այլ 19 գիր, որոնցից 6-ը ձայնավոր և 13-ը բաղաձայն։

6. Ա գիրը ասորականից չի «թարգմանել», որովհետև նրանում ա-ն ա չէ, այլ աւ-է, իսկ Է գիրը «թարգմանել» է։

Առաջին և երկրորդ կետերի վերաբերյալ իր տեսակետները հեղինակը ոչ մի նոր տվյալով չի հիմնավորում, բայց ասորական 17 գրերի այսպես կոչված «թարգմանության» մասին նախապես ոչ ոք չի խոսել։ Ի՞նչ պետք է հասկանալ, երբ նա «թարգմանել գգիրս» է ասում։ Մեր կարծիքով գրերի փոխառության մասին խոսք անգամ լինել չի կարող։ Այստեղ պարզապես նկատի է առնված դրանց հնչույթային արժեքը, այսինքն այն, որ ասորական այդ 17 գրերը կարող էին արտահայտել հայերեն համապատասխան 17 հնչույթներ։

Ի վերջո Մաշտոցի հանճարեղ գործի առավել դժվարին բաժինն այն էր, ինչպես նշել է Գ. Սևակը, որ իր մայրենի լեզվի բազմաթիվ հնչյուններից տարբերեր թվով շատ ավելի սահմանափակ հնչույթները[77]։ Եվ այս խնդրում ասորական (և ոչ միայն ասորական) գրերը կարող էին օգտակար լինել։ Դարձյալ բացատրաբար տառերի հնչույթային արժեքը նկատի ունի մեր հեղինակը, երբ ասում է, թե «չգայր ի բան այն Ե գիրն» — քանի որ հայերենում նրանք չեն ունեցել համապատասխան հնչույթներ։ Ուստի և մերժվել են։ Միևնույն մոտեցումը կա հայերեն ա տառի ասորականից «թարգմանված» չլինելու կարծիքի մեջ, որովհետև, ինչպես նշել է նրբանկատ մեր հեղինակը, «ասորոցն, աւ է», այսինքն չի համապատասխանել մեր ա հնչույթին[78]։

76 Ձեռ. № 750, էջ 116ա։

77 Գ. Սևակ, Մեսրոպ Մաշտոց..., Երևան, 1962, էջ 29։

78 Ձեռ. № 750, էջ 116բ։

Այս է պատճառը, որ Մաշտոցը չգոհացավ միայն ասորական գրերի ուսումնասիրությամբ։ Հայերենում կային ավելի հնչույթներ։ Նոր որոնումներ էին պետք, որպեսզի ավելի հանգամանորեն ուսումնասիրվեր հայերենի հնչյունային համակարգը, վերջնականապես ճշտվեին նրա բոլոր հնչույթները և միայն հետո հորինվեին ու ձևի բերվեին տառապատկերները։ Եվ ահա Մաշտոցը, ըստ Վարդան Արևելցու, ճշտում է նաև մյուս 19 հնչույթները։ Այս առթիվ «Ժղլանքում» նշված 19 համապատասխան տառերը բավարար հիմք են տալիս ասելու, որ իրոք Մաշտոցը օտար տառերի հետ «հաշվի է նստել», առանձնապես նրանց հնչույթային արժեքը նկատի ունենալով և ոչ գծագրական հատկանիշները կամ գրելակերպը։ Իսկ այդ նշանակում է, որ նա իրապես հայերենի հնչյունային համակարգը ևս համեմատել է ասորերենի, հունարենի և այլ լեզուների հնչյունային համակարգի հետ։ Աշխատանքային այս եղանակը հնարավոր դարձրեց նրա հանճարեղ գյուտը, քանի որ նա վերջնականապես պարզեց, թե որոնք են հայերենի հիմնական հնչույթները, առավելապես նրանք, որոնք հատուկ են հայերենին։ Եվ մեր հեղինակի համաձայն, նշված 19 գրերը ասորականում չունեն իրենց համապատասխանը։ Ահա նրանք. ձայնավորներ՝ ա, ե, ո, ի, ը, ւ, բաղաձայններ՝ բ, գ, դ, ժ, ծ, ձ, ղ, ջ, վ, ց, չ, ճ, յ, փ։ Սակայն, ինչպես նկատում ենք, այս տառերից մի քանիսին համարժեք հնչույթով տառեր իրականում ունեն ասորիները։ Ուրեմն, Վարդան Արևելցին, գոնե մասամբ, սխալվո՞ւմ է։ Բայց գիտենք, որ Արևելցին ծանոթ էր ասորերենին և չէր կարող այսպիսի տարրական սխալ թույլ տալ։ Արդյո՞ք այս փաստը կարոտ չէ այլ բացատրության։ Ինչպես հայտնի է, երկար, դեռ չճշտված ժամանակներից ի վեր, մեր գրերից մի քանիսը՝ բ-պ, գ-կ, ծ-ձ, ճ-ջ, դ-տ, տարբեր ձևով են հնչվում։ Արևմտահայ արտասանությամբ բոլորովին հակադարձ պատկեր է ստացվում՝ պ-ն իբրև հնչույթ փոխարինում է բ-ին, կ-ն՝ գ-ին, ձ-ն՝ ծ-ին, ջ-ն՝ ճ-ին, տ-ն՝ դ-ին։ Արդյո՞ք դեռ այն ժամանակ Կիլիկիայում այսօրվա արևմտահայ արտասանությունը չի եղել։ Մեր կարծիքով Արևելցու վերոհիշյալ հաղորդումը գալիս է հաստատելու մեր ենթադրությունը։ Եվ, իրոք, եթե խնդրին այս տեսանկյունից մոտենանք, գրեթե ամբողջությամբ նրա ասածները ճիշտ կլինեն։ Հայտնի է, որ ասորական այբուբենի մեջ մեր ներկա արտասանությամբ չկան պ, կ, ձ, ջ, տ և այլ մի քանի գրեր և եթե դրանք փոխարինենք արևմտահայ արտասանությամբ համապատասխան հնչույթներն արտահայտող տառերով, այսինքն պ-ի փոխարեն գրենք բ, կ-ի փոխարեն՝ գ, գրեթե նույնությամբ կստանանք վերոգրյալ տառերի շարքը։ Մեր ենթադրությամբ բացատրության կարոտ են մնում միայն ի, ծ, ղ գրերը։ Հայկական և ասորական ա տառերի օրինակով տեսնում ենք, թե ինչքան բծախնդիր է մեր հեղինակը տառերի հնչույթային արժեքի նկատմամբ։ Գուցե և այդպիսի նուրբ տարբերություն եղել է նաև այս երեք գրերի հայերեն և ասորերեն արտասանության մեջ։ Ինչ վերաբերում է ղ տառին, ապա պետք է ենթադրել, որ թերևս ձեռագրերում այն շփոթվել է դ-ի հետ, ինչպես այլ դեպքերում շատ է պատահել։

Այսպիսով «Ժղլանքի» հիշյալ հատվածը, մեր կարծիքով, հիմնականում պատմում է գրերի գյուտի, Մեսրոպ Մաշտոցի գործելակերպի, օտար տառերին դիմելու նրա նպատակի, հայոց և ասորիների գրերի առնչությունների (ըստ որում առավելապես հնչույթային արժեքի տեսակետից), Կիլիկիայում մեր այբուբենը արևմտահայ արտասանությամբ հնչելու հնարավորության մասին։

Նկատի առնելով կարևորությունը՝ ստորև մեջ ենք բերում «Ժղլանքի» հայերեն գրերի գլուխին վերաբերող հատվածը՝ ամբողջությամբ։

«Եւ ո՞ր են գրերն զոր պարգևեաց աստուած։

Պատ. Այս են՝ Զ գիր ձայնաւոր և ԺԹ անձայն։ Եւ ձայնաւորքն են այս՝ ա, ե, ո, ի, բ, ւ, և անձայնքն են այս՝ բ, գ, ժ, ծ, ձ, շ, չ, վ, ց, չ, ճ, յ, փ, ընդ ամեն ԺԹ։ Եւ այս են Ճշմարտապէս աստուծոյ տուեալ, զի ասորիք ընդ մեր Թագաւորօքն էին և նոցայն ԻԲ գիր է, ի նոցանէ ջանացան առնել մեզ գիր։ Եւ լեալ էր հայերէն նշանագիր ի հին ժամանակն սակաւ և զի չկարէին բանել նոքօք՝ Թողին և մոռացաւ և եփ դարձեալ ի խնդիր եղեն, գտաւ առ Դանէլ անուն ասորի եպիսկոպոս, և Սահակ Մեսրովբ առաքեցին զԱբէլ անուն էրէց ասորի և եբեր։ Զի չբերէր լիով զհարստութիւն լեզուիս, գնաց դարձեալ Մեսրոպ առ նոյն Դանէլ եպիսկոպոս և սակաւ ինչ աշխատ եղեն և չկարացին ինչ աւելի շահիլ, զի առաջինն ի նոցանէ էր առած ԺԷ գիր, զի Ե գիրն Թողեալ էր և չէր Թարգմանեալ, եփ ջանացին Թէ Թարգմանենք բառ մեր լեզուիս, չգայր ի բան այն Ե գիրն։ Ապայ յաղաւթս ապաւինեալ տեսանէր մարգարէական աչօք Թաթ ձեռին աջոյ որ գրէր ի վերայ վիմի և ամենայն հանգամանքն և որպէսութիւնքն տպաւորեցաւ ի սիրտն և վաղվաղակի առեղծանէր ԺԵ գիր. և այն որ է աւեն, վասն նոցա պատուականութեան աւեն, որ ձայնաւորք են և որպէս հոգի են այլոցն։ Եւ ընդէ՞ր աւեն Ե, զի Զ է ձայնաւորն. զի Է գիրն կայր յասորոցն և նայ զայն էառ ի Դանիէլէ Մեսրոպ, վասն որոյ զայն այլ նմայ աւեն, բայց ի մարդոյ օգտեցաւ։ Զայ, զէ գիրն, և զԺԹ գիրն յաստուծոյ, և վասն զրոյն առաւել պիտանութեան զէ մէն աւեն և զովեն, և զԺԲ չյիշեն։ Այլ զայս հաստատ տես և Թէ աւեն։ Թէ ալփայն այլոցս կայ, է՞ր չառնուին. աւեմք Թէ ասորոցն աւ է, որ է՝ ո և այրն այս է, ա չկայ։ Եւ այլըզ զի ունին, բայց այլ [կ]երպիւ, մերն յաստուծոյ ձեւացաւ աւրինակն, այս առանց կարծեաց է»[79]։

Ինչպես տեսանք, «Ժղլանքը» առնչություն ունի նաև հայկական նշանագրերի կամ՝ «նշանագիրք իմաստնոց»-ի հետ։ Դիտել ավինք նաև, որ այնտեղ եղած նշանագրերի հայտնի ցանկը, որի մեծ մասը համառոտագրություններ է, ամենայն հավանականությամբ մաս է կազմել «Ժղլանքին»։ Ուստի նա պատկանում է Վարդան Արևելցու գրչին և ԺԴ դարից այն կողմ չի անցնում։

Առաջին հայացքից իսկ նկատելի է, որ ցանկի մեջ կան և՛ նշանագրեր, և՛ համառոտագրություններ։ Առաջինները ձևած են զանազան գծապատկերների տեսքով, երկրորդները՝ հայկական բոլորգրի հիման վրա։ Վերջիններս հորինվել են, հավանաբար, ԺԲ դարից հետո, երբ բոլորգիրը համեմատաբար ավելի լայն կիրառում է գտնում մեր ձեռագրերում, ուստի նրանք ուղղակի կապ չէին կարող ունենալ հայկական բուն նշանագրերի հետ։ Իսկ առաջինները ոչ մի ձևական աղերս չունեն հայկական գրերի հետ և, անշուշտ, մասամբ, հայկական հնագույն նշանագրերի մնացորդ նմուշներն են։ Բայց ինչպե՞ս։ Եթե իրար հմայագրերում եղած նշաններից գոնե մի մասը մեր հնագույն նշանագրերից կարող են լինել, ինչպես ենթադրվում է. ապա այդ որոշակի է, քանի որ վերջիններիս, հիշյալ ցանկի և ձեռագրերում եղած այլ և այլ նշանագրերի խմբերի միջև նմանությունն ակնհայտ է[80]։

---

79 Մատենադարան, ձեռ. 750, էջ 115բ։

80 Լ. Խ ա չ ի կ յ ա ն, Նախամեսրոպյան գրի հարցը և հմայագրերը, «Պատմա-բանասիրական հանդես», 1963, № 4, էջ 157։

Կազմելով իր նշանագրերի ցանկը Վարդան Արևելցին, հավանաբար, ոչ միայն հավաքել է նշանագրերը, այլ նշել մի մասի նախկին նշանակությունը, մի մասն էլ իմաստափոխել, այսպես ասած՝ «քրիստոնեականացրել»[81]: Իսկ համառոտագրությունները, հավանական է, որ մեծ մասով իր կողմից հորինված լինեն:

Այսպիսով, քանի որ նրա ցանկի և հայկական հնագույն նշանագրերի միջև որոշակի կապ կա և եթե գալիք ուսումնասիրություններով հաստատվի, որ այդ ցանկի մեջ մասամբ պահպանված են վերջիններիս նախկին բուն նշանակությունները, ապա կարելի է հույս ունենալ, որ նրանք կարող են նպաստել նշանագրերի վերծանության գործին:

«Ժղլանքում» երաժշտությունը թեև հատուկ ուսումնասիրության նյութ չի դարձել, սակայն վերջինիս վերաբերյալ նրանում տեղ գտած հաղորդումները հետաքրքրությունից զուրկ չեն հայ երաժշտության պատմության և բանասիրության տեսանկյունից:

Հիմնականում կրկնելով Ստեփաննոս Սյունեցուն, մեր հեղինակը հայտնում է, թե ո՛վ է կատարել ձայների տեսակների առաջին դասակարգումը, ո՛ր երաժիշտը ինչպիսի՝ նվագարան է պատրաստել, Ա. Բ. Գ. Դ. «ձայներն» ու «կողմերը» ովքեր են ճշտել, ծնծղա, տավիղ, քնար, փողային նվագարաններն ովքեր են գործածել, և այլն: Սրանք թեև երաժշտության պատմության ամենանախնական տեղեկություններից են և երաժշտական գիտելիքների առաջին նշույլներից, սակայն, հատկապես, տվյալ ժամանակաշրջանի համար ունեցել են իրենց տեղն ու նշանակությունը:

Երաժշտությունը իբրև արվեստի առավել ներգործուն ճյուղ և հնարք շատ վաղուց է կրոնական հայտնի գործիչների ուշադրությունը հրավիրել իր վրա և կիրառվել եկեղեցական պաշտամունքային ծիսակատարությունների ժամանակ: Հայ եկեղեցին ևս իր սկզբնավորության իսկ օրից որդեգրել է երաժշտությունը, քանի որ «...Զիք ինչ, որ զկամս մեր հեղաշրջէ յուրախութիւն կամ ի տրտմութիւն, որպէս զերգոյն ձայն, յորժամ որպէս պարտն իցէ՝ լինիցի. վասն այսորիկ և եկեղեցական աւանդութիւն ընկալաւ զայն յարտաքնոցն»[82]: Հաստատելով երաժշտության կիրառման անհրաժեշտությունը, եկեղեցին չէր կարող միաժամանակ որոշ վերապահություն չանել: Չէ՞ որ երաժշտությունը միշտ էլ ունեցել է իր տարբեր բնագավառները և բնույթը: Այս երևույթը եկեղեցին նկատել է: Նա, իբրև ժամանակի պրոֆեսիոնալ երաժշտության միակ ներկայացուցիչը, բնականորեն և անհրաժեշտաբար իր ուշադրությունը պիտի կենտրոնացներ ժողովրդա-գուսանական երաժշտության առավելապես լեզվա-ոճական ամենակենսունակ հատկությունների վրա: Դրանցից բացի եկեղեցին երաժշտությունից քաղելու էր իր էության, միջավայրին և նպատակներին համապատասխան արտահայտություններ: Դրանք և՛ պիտի հեռու պահեին իրենց այսպես կոչված «աշխարհականացումից», և՛ ավելի տպավորիչ ու ներգործուն պիտի դարձնեին եկեղեցական երաժշտությունը հավատացյալների համար:

Այս նկատառումով հայ եկեղեցու ականավոր գործիչներից ոմանք անհրաժեշտ են գտել աչքաթող չանել հայ աշխարհիկ երգն ու երաժշտությունը: Այս

81 Տե՛ս ձեռ. № 750, էջ 126ա:

82 Ն. Թահմիզյան, Էջեր միջնադարյան հայկական երաժշտական գեղագիտությունից. «Էջմիածին», 1963, № 11, էջ 54:

տեսակետը մեր հեղինակը ներկայացրել է հետևյալ պարբերությամբ. «...Եւ վասն է՞ր խառնեաց ձայնս և նուագս ի բանս Հոգւոյն Դաւիթ... պատ. յաղագս Բ պատճառի, առաջին, զի սատանայի գիւտ էր քնարաւք և աւղաւք խրախուսցանել զմարդիկ, խառնեաց զայն ի բանս Հոգւոյն Դաւիթ, զի սրբեսցէ և իւր զինուքն խոցոտեսցէ զինքն և հալածեսցէ, որպէս ի Սաւուղայ, և Բ զի քաղցրաձայնութեամբն կաշառեալ մարդիկ և հեշտացեալ՝ զանխըլաբար ուսցին զհոգէխառն բանսն»[83]: Այս տողերից ուղղակիորեն հետևում է, որ եթե Դավիթ մարգարեն որդեգրեց նվագը, որը նույնիսկ «սատանայի գիւտ էր» իր աշխարհիկ ծագումով ու բնույթով, որպեսզի «քաղցրութեամբն... ուսցին զհոգէխառն բանսն», ապա, ինչո՞ւ հայ եկեղեցին չդիմեր միևնույն քայլին:

Այսպիսով Արևելցին փաստորեն առաջադրում է կամ թելադրում, որ հայ եկեղեցին համարձակորեն ձեռք մեկնի աշխարհիկ երաժշտությանը, այն օգտագործի իր նպատակների համար: Հասկանալի է այս երևույթի առաջադիմական նշանակությունը:

Նա «Ժղլանքի» մի այլ հատվածում եկեղեցական երաժշտության կամ երգեցողության հետ առնչվող հետևյալ տողերն է գրել. «Զաւետարանն յաւէտ ձայնէ պատեհ է կարդալ և զառաքեալն՝ յերրորդէ, զմարգարէսն՝ ի չորրորդէ. և կարդացողին նմանցնել պիտի զիւր խօսքն գրոցն առողին և պատճառին՝ թէ խրատական է, թէ աւետական է, թէ ըղձական է, թէ սպառնական է, թէ աղօթական է, և այլ այսպիսիք»[84]: Այստեղ երկու հիմնական և արժեքավոր հարցեր կան, որոնք վերաբերում են եկեղեցական երաժշտության ծիսական կատարման և իմաստավորման գեղագիտական կողմին: Մեկում խոսքն այն մասին է, թե ս. Գրքից եկեղեցում ընթերցվածներ կարդալիս՝ երբ ի՞նչ ձայն պետք է օգտագործել: Պարզվում է, որ գոնե տվյալ ժամանակաշրջանում Ավետարանը, առաքյալ թղթերը, մարգարեությունները պատահական եղանակով կամ ռեչիտատիվ չեն ընթերցվել, այլ յուրաքանչյուրի համար սահմանված է եղել որոշակի մի ձայնեղանակ: Այս շատ կարևոր հաղորդում է հայ եկեղեցու ծեսն ու երաժշտությունը ուսումնասիրելու համար, մանավանդ, այժմ, երբ վերոհիշյալ կարգը չի պահպանված:

Երկրորդում խոսվում է այն մասին, թե ինչպես պետք է կատարել և մեկնաբանել երաժշտությունը: Նախ անուղղակիորեն ընդգծվում է, որ այն միալար չէ և պետք չէ լինի, ապա թելադրվում, որ այն կատարվի եղանակավորված բնագրի իմաստի կամ տրամադրության համեմատ, ըստ այդմ՝ խրատական, ըղձական, սպառնական և այլն:

Նշված սույն փաստերը վկայում են, որ Վարդան Արևելցին, եթե ոչ առաջինը, գոնե առաջիններից մեկն է, որ հայ եկեղեցական և աշխարհիկ երաժշտության փոխադարձ մերձեցման հարցն է առաջադրել[85]:

Իսկ ինչ վերաբերում է մեջ բերված երկրորդ պարբերության՝ եկեղեցում ս. Գրքի ընթերցվածների ձայնեղանակների և երաժշտության կատարման կեր-

---

83 Ձեռ. 750, էջ 113ա:

84 Անդ, էջ 119ա:

85 Ն. Թահմիզյանի հիշյալ հոդվածում (էջ 54) նշված է նաև մի անանուն հեղինակ, որի մոտ նույնպես կա Դավիթ մարգարեի մասին վերոգրյալ հաղորդումը: Բայց մեր որոնումներից պարզվեց, որ այդ հեղինակը Գր. Տաթևացին է, քանի որ մատնանշված աղբյուրը նրա «Գիրք հարցմանցի» մի մասն է:

գի մասին, ապա, պետք է ասել, որ այն ավելի համառոտակի առկա է Հովհ. Վանականի «Հարցմունք և պատասխանիք» աշխատության մեջ[86]։

«Ժղլանքի» բազմաժանր միավորների թվում կա նաև տաղաչափության մասին մի հատված, որ մեջ ենք բերում ստորև.

«Տաղական բանին ցոյցք.

Իմաստնոյ չէ փոյթ տաղական անուն, զի հոգիածու բանն չունի զայն հոգն, բայց իսմայելացիքն պատուեն. ասեն թէ սուլտանն խաղալ ի Բանեա յոյժ սիրէր զտաղական բանն, որ է յոտանաւոր։ Եւ յաւուրս նորա նստար մի խաղալ անուն, որդի Մութանարեայ. արար յոտանաւոր մի և մատոյց սուլտանին, իսկ նա յանկոյն արարացոյց ԽԺ-ան Ռ դեկան կարմիր ոսկ ի վերայ նորա։ Եւ արա այսպէս. թէ զայրն գնես առաջք և յերկարես զբանն յեցն փոխէ, իսկ զոտքն թէ ինի գնես և յերկարես և փոխել կամիս ւ ին գիր, որ է ին ւ, այս հեշտ է։ Բայց ի յե ք վճարելն դժուար է։ Եւ արայ այսպէս. խոստովանիմք զաստուած և ք, անսկիզբն և մի բնութիւն և ք, անձինք Գ ի փառս միասրս և ք, յոչէից արար զաշխարհս և ք, և զԱդամ հողանիւթեայ իշխան նոցա և ք, իսկ ք ասելն միագիր վանգ է և կոչի զարմացումն։ Մի՛ համարիր զայս ընդ վայր, և տէրն փառք»[87]։

Նվազ հետաքրքրություն չեն ներկայացնում «Ժղլանքում» տեղ գտած 7 մանր հրաշապատում զրույցները։ Նրանք մեր գեղարվեստական արձակի անդրանիկ նմուշներից են[88]։

Նրանք ունեն ոչ բարդ, սահուն շարադրանք։ Կառուցվածքով պարզ են, ունեն փոքր ծավալներ, զուրկ են մի շարք այլ հրաշապատումներում հանդիպող ավելորդաբանությունների ձանձրալի ողողումներից։ Քանիցս կրկնված տրամախոսությունները, որոնք զերծ են ճարտասանական արվեստակյալ դարձվածքներից, և դեպքերի համեմատաբար աշխույժ ընթացքը նրանց հաղորդում են թարմություն և կենդանություն։ Թվում է, թե հեղինակը ընթերցողին հրապուրելու և կամ տրամադրելու ոչ մի ջանք չի թափում։ Նա ոչ մի ավելորդ արտահայտչական ու ձևական հնարանքի չի դիմում ընթերցողին իր հույզերը անպայման հաղորդելու և իր նպատակը նրան պարզելու համար։ Սակայն, օժտված լինելով հանպատրաստից ծնված մտերիմ զրույցի բնականությամբ և պարզամտությամբ, նրանք ավելի շուտ են հասնում ընթերցողի գիտակցությանն ու զգացումներին։

Լեզվա-ոճական առումով էլ նրանք բնական են ու անբռնազբոսիկ։ Նրանց ոճը չունի կրոնա-դավանաբանական նյութերի ավանդական խրթնությունը, անպաճույճ է, ճարտասանական շինծու դարձվածքներից ազատ ու կենդանի, իսկ լեզուն, որ լիքն է միջին հայերենի տարրերով, հստակ է, նույնիսկ անմշակ, բայց սահուն և մատչելի։

«Ժղլանքը» շարադրելիս Վարդան Արևելցին, ավելի քան իր մյուս աշխատություններից որևէ մեկում, դիմել է միջին հայերենին և ժողովրդական լեզվի միջոցներին։

---

86 Մաշտոցյան մատենադարան, ձեռ. № 5611, էջ 57բ։

87 Ձեռ. № 750, էջ 165բ։ Համեմ. Հովհ. Վանական, Հարցմունք և պատասխանիք, ձեռ. № 5611, էջ 78բ։

88 Ձեռ. № 750, էջ 45ա։ Այս զրույցները նույնությամբ Կ. Գանձակեցին զետեղել է իր պատմության մեջ։ Տե՛ս Կ. Գանձակեցի, Պատմություն Հայոց, Երևան, 1961, էջ 348—355։

Արևելցու ստեղծագործությունների մեջ միջին հայերենի կիրառման փաստերի և նրանց բնորոշ հատկանիշների խնդրով մենք զբաղվելու ենք այլ առիթով։ Այժմ գոհանանք մի քանի նմուշների սոսկ հիշատակությամբ, որոնք քաղել ենք միայն Ժղլանքից, գեթ թեթևակի պատկերացում տալու նրանում հեղինակի օգտագործած «ռամկորենի» ընդհանուր վիճակի մասին։ «Եւ այս աղւոր է», «զգայարանք յառակ էին, մեղօք չէին բթել», «եւ այնչափ մաշեալ է, որ յեզուն մեն է մնացել», «գիտեայ և զայս, զի Մովսէս նահապետ կայ անուան, չէ յիշել, ընդ մէջ է թողել, իսկ Ղուկաս աւետարանիչ յիշել է, որ գիտենանք, թէ ի սուրբ հոգւոյն գրեցին աւետարանիչքն», «Լոէ, կու ասէ, թէ», «Աղէկ և մաւտր հասկցիր» և այլն[89]։

«Ժղլանքը» հագեցած է լեզվական այսպիսի նմուշներով, որոնք հեղինակի լեզվին ու ոճին հաղորդել են նոր որակ, նոր ձև՝ պարզ, աշխույժ և անմիջական։

Ամփոփենք։ «Ժղլանքը» մեր միջնադարյան գրականության հետաքրքրական երևույթներից մեկն է։ Այն համայնագիտական ծավալուն մի երկասիրություն է բնության, երկնային մարմինների, մարդու, նրա հոգեկան և իմացական գործունեության, լեզվի, քերականագիտության, հայկական նշանագրերի, գրերի գյուտի, երաժշտության և այլ հարցերի մասին։

«Ժղլանքը» շատ քիչ է ուսումնասիրված, չունի ոչ մի հրատարակություն, միայն առանձին քաղվածքներ են լույս ընծայվել նրանից։ Երկար ժամանակ այն ամենաշատ գնահատված ու սիրված գրքերից մեկն է եղել, ընդօրինակվել է ԺԳ—ԺԹ դդ. բազմաթիվ ձեռագրերում և լայն տարածում գտել։ Թեև ուշ շրջանի ձեռագրերի մեջ «Ժղլանքի» բնագիրը բավականաչափ աղճատված է, մի բան, որ որոշ շփոթությունների առիթ է տվել, սակայն հնագույն մի քանի ձեռագրերում պահպանված է իր ընդհանուր կառուցվածքով ու ծավալով։ Ձեռագրական մի շարք տվյալների համաձայն այն բաղկացած է շուրջ 70 մանր նյութերից։ Այն գրվել է Հեթում Ա. թագավորի համար արդյունաշատ Վարդ. Արևելցու կողմից, Կիլիկիայում, 1240—1248 թթ.։

П. П. АНТАПЯН

## «ЖХЛАНК» ВАРДАНА АРЕВЕЛЦИ

### Резюме

В богатом литературном наследии видного летописца Вардана Аревелци определенное место занимает его работа «Жхланк» (беседы, полезные знания), написанная в 1240—1246 гг. для киликийского армянского царя Хетума I. Предметом специального исследования эта работа становится впервые.

Этот примечательный труд сохранился в многочисленных копиях, древнейшая из которых относится к 1274 г. Эта и ряд других рукописей дают возможность уточнить структуру и объем «Жхланка». Выясняется.

89 Ձեռ. № 750, էջ, էջ 58ա, 85բ, 87բ, 95բ, 96բ, 107ա։

что он состоит из 70 небольших отдельных материалов богословского, естественно-философского, космографического, общественно-политического, культурного, литературно-художественного, грамматического, музыковедческого содержания.

Не менее ценны и те отделы «Жхланка», которые относятся к межгосударственным политическим отношениям армянского народа с Византией и Ватиканом.

Одна из характерных черт «Жхланка» его ясный, простой стиль и почти разговорный язык.

P. P. ANTABIAN

## LE „JEGHLANK“ DE VARDAN AREVELTSI

Le „Jeghlank“ (mémento ou lectures récréatives) de Vardan Aréveltsi composé pour le roi d'Arménie Héthoum I en 1240—1246, occupe dans le riche héritage littéraire de son auteur une place particulière. Le présent article en est une première étude.

Le texte nous est parvenu en plusieurs copies dont la plus ancienne remonte à 1274, troisième année de la mort de Vardan. Cette dernière nous est précieuse quant à la structure et à l'étendue de l'ouvrage composé de quelque 70 questions se rapportant à la théologie, la philosophie, l'astronomie, les sciences sociales et politiques, l'art, la littérature, la grammaire, la musique.

Les passages consacrés aux relations internationales de l'Arménie avec Byzance et le Vatican ne sont pas sans intérêt.

Le „Jeghlank“ est d'un style sobre et dépouillé qui s'apparente au langage parlé.